Ի՜ՆՉ ՈՒՐԱԽՈՒԹՅՈՒՆ՝ ՆՈՐԻՑ ԴՊՐՈՑՈՒՄ,
Ի՜ՆՉ ԵՐՋԱՆԿՈՒԹՅՈՒՆ՝ ԱՌԱՋԻՆ ԴԱՍ,
ՆՈՐ ՏԵՏՐԵՐԻ ՄԵՋ՝ ՀԱՍԿԵՐԻ ՊԵՍ ԶՈՒՅԳ
ՄԵՍՐՈՊՅԱՆ ՏԱՌԵՐ ԱՐԴԱՐ ՈՒ ՊԱՐԶ...

Լուսանկարը՝ ԶԱՎԵՆ ԲԵՏԻԿՅԱՆԻ

ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ ●
ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ ●



# Սպասում և հաճույք

Աշունը երկարեց այնքան, որ մարդիկ սկսեցին դժգոհել անձրևներից.

— Երանի ձյուն գա:

Ձյանն անչափ կարոտել էին նաև երեխաները: Քաղաքը մի տեսակ գորշ ու անհրապույր էր դարձել. ո՛չ աշուն էր, ո՛չ էլ ձմեռ:

Մի գիշեր, երբ բոլորը քնած էին, ձյունը սուսիկ-փուսիկ սկսեց մաղել, նախ սպիտակ ներկեց տանիքները, հետո քամին փաթիլները հավաքեց ճանապարհների եզրերին:

Հայրս, իր սովորության համաձայն, արթնացավ ու գնաց դեպի պատուհանը:

— Վերջապես ձյո՛ւն է գալիս,—ուրախ բացականչեց նա:

Ձյունը առոք-փառոք տեղավորվեց մեր քաղաքում: Երեխաներն սկսեցին ձնագնդի խաղալ, ձնեմարդ պատրաստել: Ձյան տակ պատսպարվեցին մեր բակը, պուրակը, տաղավարը: Կարճ ժամանակում բոլորս բարեկամացանք սպիտակ եկվորի հետ: Նրա թելադրանքով սկսեցինք տաք շորեր հագնել, երկարաճիտք կոշիկներ, քայլել ավելի զգույշ, որ... Մի խոսքով, այսպես օրեր, շաբաթներ անցան: Ձյունը աներես հյուրի նման նստեց մեր քաղաքում: Բոլորս հոգնեցինք ցրտից, սառույցից: Ամենքից շատ տըր-

# ՍՏԵՓԱՆ ՇԱՀՈՒՄՅԱՆԻ ՀԻՇԱՏԱԿԻՆ

(Ծննդյան 100-ամյակի առթիվ)



**1923 թվականին, երբ Ջալալօղլիում նշում էին 26 կոմիսարների գնդակահարության հինգերորդ տարին, ի հիշատակ Ստեփան Շահումյանի՝ Ջալալօղլին վերանվանեցին Ստեփանավան։ Այս անվանումը սոսկ հարգանքի տուրք չէր բոցաշունչ հեղափոխականին։ 1899—1903 թվականներին Շահումյանն ապրել է այստեղ և կազմակերպել Հայաստանի առաջին մարքսիստական խմբակը։**

## ՀՈՒՇԱԿԵՆՏՐՈՆԸ

Ստեփանավանի ճարտարապետական ինքնատիպ լուծումներով հին ու նոր շենքերին այս տարի ավելացավ նորը՝ Շահումյանին նվիրված հուշակենտրոնը։ Նորակառույցն իր մեջ է առել նախկին տուն-թանգարանը։ Այնտեղի ցուցանմուշներն ու վահանակները տեղադրվել են հուշակենտրոնի ընդարձակ սրահներում։ Այստեղ կան նաև շքեղ դահլիճ, խաղասենյակներ։

Գեղեցիկ պուրակով ու ծեմուղիներով շրջապատված հուշակենտրոնը շրջանի աշխատավորության սիրելի հանգստավայրերից մեկն է դարձել։

## ԴՊՐՈՑԱԿԱՆ ԹԱՆԳԱՐԱՆԸ

Քաղաքի № 1 դպրոցը, ինչպես նաև դրուժինան կրում են Ստեփան Շահումյանի անունը։ Աշակերտների ձեռք բերած նյութերով դպրոցում թանգարան է բացվել։ Թանգարանի չորս բաժիններում ներկայացված են Շահումյանի կյանքին ու հեղափոխական գործունեությանը նվիրված փաստաթղթեր, լուսանկարներ։ Մայրի ձորում, ուր Շահումյանի գլխավորությամբ իրենց գաղտնի պարապմունքներն են անցկացրել Հայաստանի առաջին մարքսիստական խմբակի անդամներ Ս. Հարությունը, Ա. Թումանյանը, Ն. Դադալանյանը, Ա. Թումանյանը, Ս. Իսրայելյանը, Ս. Հարությունյանը, հաճախ կարելի է հանդիպել դպրոցի աշակերտներ Համիկ Բաղդասարյանին,

**ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ ● ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ ●**

**տրնջում էր դոնապան Օսան մորաքույրը.**

**— Հոգիս դուրս եկավ մայթերը մաքրելուց։**

**Գարունը լսեց բոլորի տրտունջը, ձմռան ականջին շշնջաց.**

**— Ամոթ է, սպիտակ փեշերդ հավաքիր գնա՛, չե՞ս զգում, որ մարդկանց կոկորդին ես նստել։**

**Ձմեռը վարմունքից շիկնեց.**

**— Ախր մարդիկ ինձ այնքան անհամբերությամբ էին սպասում,— ասաց նա,— իսկ հիմա...**

**Վշտից, ամոթից նա հալվեց, մաշվեց, խեղճացավ, փոքրացավ, քարերի տակ պատսպարվելով բարձրացավ լեռները, ու մեր քաղաքը բռնկվեց կանաչ խրդեհով։**

*ԱՆԱՀԻՏ ԱՌՈՒՍՏԱՄՅԱՆ*
*Երևանի Ն. Զարյանի անվան դպրոց, 8-րդ դասարան*





**Ցուլ էր Արմենը։ Մարդիկ նայում էին նրան, ցավով օրորում գլուխներն ու հիշում նրա պապին, որը գյուղում հարգված հողագործ էր։ Մատնացույց էին անում հորը՝ անվանի բրիգադավարին։ Ոչ մի նմանություն։**

**Արմենը շատ էր սիրում քրքրել տատի սնդուկը։ Մի անգամ տատի սնդուկը քրքրելիս նրա ձեռքն ընկավ մի կապոց։ Բացեց։ Կապոցից դուրս եկան խու-**

Ռուզաննա Հովհաննիսյանին և Անահիտ Աբովյանին: Բացի պատմության խմբակի պարապմունքներից, նրանք այստեղ էքսկուրսիաներ են վարում, զբոսաշրջիկներին պատմում Շահումյանի և նրա կազմակերպած խմբակի գործունեության մասին:

## ՄԱՅՈՐԻ ՁՈՐԸ

Ձորագետի կիրճի այդ հատվածը այդպես է կոչվում, որովհետև (ինչպես բացատրեցին տեղում) մայորի կոչումով զինվորական է մահացել այդ ձորում: Սակայն ձորի այդ հատվածը մեծ ուշադրության է արժանացել ոչ թե լոկ նշված միջադեպի պատճառով, այլ...

Ջրառատ մի վտակ, շրջանցելով Ստեփանավան քաղաքը, գալիս և ժայռի կատարից խելագար արագությամբ գահավիժում է Մայորի ձորը և փրփրալով խառնվում Ձորագետին: Ճիշտ այդ ջրվեժի կողքին թերակղզու տեսքով մի տափարակ կա, որի մեջտեղում դրված ժայռաբեկորից դեպի հեռուներն է նայում Շահումյանի դիմաքանդակը՝ շուրջը քարե ալիքներ, որոնք ասես խորհրդանշում են նրա փոթորկուն ու անհանգիստ կյանքը:

Այդ փոքրիկ հարթակից սանդուղքները տանում են ցած: Մի փոքր իջնելուց հետո, ձախ կողմի ժայռին մարքսիստական առաջին խմբակի անդամների դիմաքանդակներն են, ներքևում Շահումյանի մեծադիր հարթաքանդակը, իսկ նրա դիմաց՝ յափնջու մեջ կոլոլված տղամարդու հարթաքանդակ:

— Յափնջավորը վարպետ Կամսարն է,— տեղեկացնում են ուղեկիցներս և ավելացնում, որ նա ձորի պահակն է՝ ինքնուս քանդակագործ է և առանց պատվերի ու վարձատրության է արել այս ամենը:

Լանջի կեսից սանդուղքներն ավարտվում են, իսկ արահետն անցնում է գաղտնարան-քարանձավի տակով: Այդ դժվարամատչ, շատ խորշեր ունեցող քարանձավում խմբակի անդամները ոստիկանությունից թաքցրել են արգելված գրականությունը: Իսկ գաղտնի հավաքները անցկացրել են երեք հսկայական քարանձավներում:

Ձորից անշտապ բարձրանում ենք վեր և հանդիպում ինքնուս քանդակագործ Կամսար Մանուկյանին: Վարպետը քարերին թիկնած, հաճույքով պատմում է, որ հենց աչքն ուշագրավ ժայռի է հանդիպում, անտարբեր չի կարողանում մնալ, քանդակելու ցանկություն է ունենում:

— Մայորի ձորի հետ դեռ հաշիվներս չեմ փակել,— հրաժեշտից առաջ ավելացնում է նա:

— Իսկ ի՞նչ եք մտադիր քանդակել:

— Կգաք, կտեսնեք,— ակնոցների տակից ժպտում է նա ու ավելացնում, որ իր տղան՝ Տավրոսը հոր օրինակով, հոր քանդակների կողքին մեծ աշխատանք է ձեռնարկել, թե ինչ մտահղացումներ ունի, նույնիսկ հորը դեռ չի հայտնում:

— Որդին էլ հոր պես գաղտնապահ է,— նկատում ենք մենք:

— Որդին էլ հոր պես պարծենալ չի սիրում,— ուղղում է մեզ վարպետը,— կանենք՝ կգաք կտեսնեք:..

ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ

● ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ ● ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

նացած նամակներ: Վերցրեց մեկը և կարդաց, ու հանկարծ նրա հայացքը կանգ առավ «Գանձ» բառի վրա: Նորից կարդաց, ապա սնդուկը նետելով նամակները, արագ վազեց դեպի այգի: Վերցրեց բահը և սկսեց տենդագին փորել նամակում նշված ծառի տակը: Ոչինչ չկար: «Մի՞թե խաբել է ծերուկը»,— բարկացած մտածեց նա: Հանկարծ բահը ինչ-որ բանի կպավ: «Գանձը»,— ուրախացած մտածեց Արմենը և սկսեց դողացող ձեռքերով մի կողմ տանել հողը: Երևաց կավե թրծված սափոր: Հանեց, շորով մաքրեց ու վազեց դեպի ցախանոց: Զգուշությամբ բացեց սափորի բերանը... մեջը լիքը հող էր: Արագ-արագ սկսեց հողը թափել: Ոչինչ չկար... դռների մեջ հայտնվեց հայրը:

— Ի՞նչ ես փնտրում,—ծիծաղելով հարցրեց հայրը:

— Գա՛նձը, պապիկի թաքցրած գանձը:

— Դու արդեն գտել ես: Ամենամեծ գանձը՝ հողն է:

Իսկ հետո հայրը պատմեց, որ ինքն էլ է կարդացել նամակը, փորել, հանել է սափորը, հասկացել է հոր միտքը ու նորից հորել:

— Տա՛ր, դո՛ւ էլ տար նորից հորի...

Ամբողջ գիշեր երազում Արմենը հողով լի սափորն էր տեսնում, հեռու-հեռվից լսում էր հո՞ր, թե՞ պապի ձայնը. «Ամենամեծ գանձը հո՛ղն է, որդի՛ս»:

Առավոտյան նա լռելյայն վերցրեց բահը և հոր ետևից գնաց դաշտ:

*ԱՐԱՄ ՀՈՎԱԿԻՄՅԱՆ*
*Դիլիջանի № 1 դպրոց,*
*9-րդ դասարան*

# Իմ դպրոցական ընկերուհին

Ի. ՊԻՎՈՎԱՐՈՎԱ



Պառկած մտածում եմ Լյուսյա Կոմիցինայի մասին: Հիվանդ եմ, իսկ նա չի գալիս: Ես արդեն հինգ օր է տանն եմ, Լյուսյան ոչ մի օր չերևաց: Էլ ի՞նչ ընկերուհի է նա այս բոլորից հետո:

Դա՛ է, նեղացել է ինձնից մի դատարկ բանի համար: Ես իրեն ասացի, թե ինքը գերազանցիկ է, բայց խելոք չէ, գրքեր չի կարդում, միայն դասագրքերն է բերանացի անում: Էլ ինչո՞ւ է վիրավորվում, եթե դա ճիշտ է: Բացի այդ, այն ժամանակ իմ տաքությունն արդեն բարձր էր: Հիվանդ մարդուց մի՞թե կարելի է նեղանալ:

Խիղճ չունի, ահա թե ինչ: Մի ուրիշն արդեն հարյուր անգամ եկած կլիներ, իսկ սա միայն նեղանալ գիտե: Լավ, թող այդպես լինի: Այ, ես էլ իրենից կնեղանամ և երբեք չեմ ների: Երբե՞ք: Դե հիմա ինչքան ուզում է թող հաճոյանալ ուզենա, նույնիսկ թող ներողություն խնդրի, ոչ մի դեպքում չեմ ների:

Դռան զանգը հնչեց:

Երևի դա Կոլյան է, եկել է ինձ տեսության... Իսկ եթե Լյուսյա՞ն է: Եթե Լյուսյան է, ներս չեմ թողնի: Նա էլ իմ ընկերուհին չէ: Հինգ օր է չի եկել: Իսկ եթե մեռնեի՞ այս օրերին:

...Եկավ Կոլյան: Ներս մտավ, նստեց աթոռին ու ասաց.

– Ողջո՛ւյն: Ինչպե՞ս ես քեզ զգում:

– Շնորհակալություն: Կո՛լ: Վատ եմ զգում: Բարձր ջերմություն ունեմ երեսունվեց ու յոթ:

– Գուցե երեսունյո՞թ ու վեց:

– Գուցե: Ոչինչ չեմ ուզում ուտել, նարինջից բացի: Նույնիսկ դասերը չեմ ուզում պատրաստել: Երեկվա տնային առաջադրանքն

● ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ ● ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ



# Կարոտ

— Հեռացի՛ր,— հառաչեց մարդը,— քո ճշտապահությունը ձանձրացրել է ինձ: Ես ուզում եմ մենակ մնալ:

Խոսակցությունը տեղի էր ունենում աստղանավի փոքրիկ սենյակներից մեկում: Ռոբոտը կանգնած էր վարագուրված պատուհանի մոտ, ոչինչ չարտահայտող, անթարթ աչքերով:

Մարդը զգաց, որ շատ խիստ եղավ իր առաջ կանգնած պլաստմասսայե մարդանման կառուցվածքի նկատմամբ, տհաճությամբ ասաց.

— Ների՛ր, ես հոգնած եմ, կոպիտ եղա:

— Ոչինչ,— ասաց ռոբոտը,— ես մարդ չեմ, վիրավորվել չգիտեմ: Բայց դու այսօր շատ տարօրինակ ես:

Նրա ապակե աչքերը վառվեցին կանաչ լույսով: Նա կրնկի վրա շուռ եկավ և անհետացավ հերմետիկ դռների ետևում:

Մարդը փակեց աչքերը: Ի՞նչ էր պատահել:

...Օրը սովորականի նման սկսվեց: Բայց հազիվ էին նավորդները նախաճաշել և քաշվել իրենց սենյակները, երբ պատահեց մի բան, որը նրա տրամադրությունը հիմնովին փոխեց:

Նա նստած բազկաթոռին կարդում էր: Անսպասե-

այդպես էլ չեմ կատարել, պատկերացնո՞ւմ ես:

— Պատկերացնում եմ,— ասաց Կոլյան:— Վատ է, ետ կըմնաս: Առանց այդ էլ դու վերջերս քարշ ես գալիս «երեքներով»:

— Հետո ի՞նչ,— ասացի,— ուզում եմ՝ քարշ եմ գալիս: Իմիջիայլոց, դա քո գործը չէ:

— Բա ո՞ւմ գործն է: Հետաքրքիր է, ո՞վ է մեր օղակի ղեկավարը: Ի դեպ, ես այսօր օղակի հավաք անցկացրի: Որոշեցինք բոլոր ետ մնացողներին մի-մի շեֆ ամրացնել: Կորոստիլևան Իվանովի հետ կպարապի, Մուխինան՝ Դլիննոխվոստիկովայի, իսկ քեզ հետ Կոսիցինան: Չէ՞ որ դուք ընկերուհիներ եք:

— Է՛դ էր պակաս,— գոռացի ես:— Շատ պետքս է: Գերպչանցիկ է: Ամբողջ օրը դասագրքերն է բերանացի անում, իսկ գիրք բոլորովին չի կարդում:

— Իսկ դու կարդո՞ւմ ես:

— Այն էլ ինչպե՜ս,— ես Կոլյային մեկնեցի «Երբ հայրիկս փոքր էր» գիրքը, որը կողքիս սեղանիկի վրա էր դրված...— Հիմար է քո էդ Կոսիցինան: Եվ երևակայում է: Թող մի փորձի ինձ օգնել:

Կոլյան աչքերը չռեց.

— Ի՞նչ է, գժվե՞լ ես: Ախր դուք ընկերուհիներ եք:

— Նա իմ ընկերուհին չէ:

— Չեմ հասկանում: Մեկ ձեռ ջրով չի կարելի բաժանել, մեկ էլ տեսար իրար վրա նայել չեք ուզում: Աննորմալներ եք:

Դռան զանգը մեկ էլ հնչեց:

Ուրանը, որ պառկած էր մահճակալիս տակ, վեր թռավ և սլացավ դեպի դուռը:

— Կոսիցինան է,— ասաց Կոլյան:— Դեհ, ես գնացի: Չեմ ուզում խանգարել:

— Կո՛լյա, մի՛ գնա: մենք գժտված ենք, հասկանո՞ւմ ես:

— Գժտված եք, ուրեմն պետք է հաշտվեք: Եվ ընդհանրապես դուք ձեր գժտություններով ամբողջ դասարանին ձանձրացրել եք:

Եվ նա ուղղվեց նախասենյակ:

— Ողջո՛ւյն, Կոսի՛ցինա:

— Ողջո՛ւյն:

— Առայժմ:

— Առայժմ,— ասաց Լյուսկան:

Դուռը փակվեց: Կոլյան գնաց:

Ուրանը գժի պես ցատկոտում և մնգստում էր նախասենյակում: Ինչի՞ համար է շունն այդքան սիրում Լյուսկային:

Իսկ Լյուսկան երկար ու բարակ թաթսում էր միջանցքում: Նախասենյակից լսվում էր նրա անհասկանալի փնթփնթոցն ու Ուրանի փաղաքուշ մնգստոցը:

Վերջապես դռան մեջ երևաց



ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ ● ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ ●

լիորեն դռները բացվեցին, և գունատ դեմքով ներս մտավ Տիգրանը՝ աստղանավի բժշկի տասնյոթամյա որդին:

— Դուք ծնվել եք Երկրի վրա,—ոչ թե հարցրեց, այլ պարզապես ասաց նա:

— Այո՛, Տիգրա՛ն, բայց դու նստի՛ր:

— Դուք սիրո՞ւմ եք Երկիրը:

Տիգրանը դողում էր: Նա անբացատրելիորեն հուզված էր:

— Իհարկե,— պատասխանեց նա ինչ-որ արտակարգ բանի կզացողությամբ:

Տիգրանը կտրուկ վեր կացավ, սեղանին դրեց ձեռքի փաթեթը և շտապ դուրս նետվեց սենյակից:

Ի՞նչն էր արդյոք հուզել այդ խելացի պատանուն: Հավանաբար պատասխանը գտնվում էր հենց այդ փաթեթում: Բացեց փաթեթը և...

Փոքրիկ, կապարե տուփի մեջ լցված էր ամենասովորական, երկրային հող: Այն բուրում էր այնքան ծանոթ, այնքան սիրելի, միայն հողին հատուկ բուրմունքով: Հո՜ղ... Հո՜ղ... Այստեղ, տիեզերքո՞ւմ, Արևից քսան լուսատարի հեռավորության վրա՞...

Իսկ հետո եկավ ռոբոտը և սկսեց տանջել իր այնքան չափված-ձևված, սարսափելիորեն ճիշտ մտքերով...

Հիմա մենակ է: Ո՛չ, պետք է անպայման իմանալ, թե որտեղից նրան այս հողը: Չէ՞ որ նա ծնվել է տիեզերքում և երբեք չի տեսել Երկիր մոլորակը, ուր ծնվել է նրա հայրը և մենք՝ աստղանավի ավագներս:

Լյուսկայի մազափունջը, ավելի ճիշտ՝ մազափնջից մի կտոր, և բաց կանաչ, դեղին կետերով ձախ աչքը:

Հետո երևաց ամբողջ մազափունջը և շագանակագույն աջ աչքը:

Հետո՝ բարակ վիզը: Հետո՝ կլոր սպիտակ օձիքը:

Հետո Լյուսկան մտավ սենյակ: Ուրանը նրա ետևից ներս վազեց և սկսեց կողքին թռչկոտել:

— Ուրա՛ն, ինձ մո՛տ,—հրամայեցի:—Չհամարձակվես օտարներին մոտենալ:

— Այդ ե՞ս եմ «Օտարը»: Ուրանի՛կ, ե՛կ ինձ մոտ, սիրելի՛ս:

Նա նստեց իմ աթոռին և սկսեց փաղաքշել իմ Ուրանին:

— Ուրանի՛կ, սի-իրելի՛ս, ես քեզ կոտլետ եմ բերել:

— Ուրա՛ն, չհամարձակվե՞ս ուրիշների կոտլետներն ուտել,—գոռացի:— Հապա, թքի՛ր: Անմիջապես ե՞տ թքիր կոտլետը:

— Կե՛ր, մի՛ լսիր նրան,— ասաց Լյուսկան:— Ախր նա անորմալ է: Ահա, քեզ համար երշիկ էլ եմ բերել...

— Ուրա՛ն, չհամարձակվես ուտել այդ անպետք երշիկը:

— Տեսնո՞ւմ ես, Ուրա՛ն, ես քեզ ի՞նչ էի ասում: Մտածում է հիվանդացել է, ուրեմն բոլորը պետք է վազեն իրեն տեսության: Այնպես են կարոտելու իրեն, որ սրտները պայթելու է կարոտից... Թող չկարծի: Ես քեզ եմ կարոտել և ոչ թե իրեն: Ես քեզ մոտ եմ եկել: Ահա, քեզ մի հատ էլ պոմիդորով կարկանդակ:

Ես վեր թռա անկողնուց, բռնեցի Ուրանի վզափոկից և իմ կողմը քաշեցի:

Բայց հենց որ թողեցի վզափոկը, այդ դավաճան Ուրանը նորից նետվեց դեպի Լյուսկան:

— Կեցցե՛ս, Ուրա՛ն,— ուրախացավ Լյուսկան,— նրան մի՛ լսիր: Նա մտածում է, որ ինքը խելոք է, շատ գրքեր է կարդում: Իսկ իր «Փոքրիկ հայրիկը» արդեն կես տարի է կեղտոտում է... Կե՛ր, կե՛ր կարկանդակը:

Կարկանդակը վայրկենապես չքացավ Ուրանի երախում:

Ուրանը մնգստում էր, պոչն էր շարժում և նրան էր նայում սիրահարված աչքերով:

— Համեղ է, չէ՞: Կարկանդակը տատիկս է թխել, երբ դեռ առողջ էր: Դու դեռ չգիտես, չէ՞, ինչ է պատահել իմ տատիկին,— ասաց Լյուսկան:— Պատկերացնո՞ւմ ես, Ուրանի՛կ, տատիկիս երեկ հիվանդանոց տարան:

Ուրանը մնգստաց:

— Մի՛ հավատա նրան, Ուրա՛ն: Սուտ է ասում:

— Ուրանի՛կ, ազնի՛վ խոսք, արդուկն ընկավ տատիկիս ոտքին, նրան հիվանդանոց տարան:

— Ստում է,— ասացի:

Լյուսկան հատակին ծնկի եկավ, ձեռքերով գրկեց Ուրանի վիզը, դեմքով փաթաթվեց շանը և հանկարծ... լաց եղավ:

Ո՛չ, նա չէր ձևացնում: Նա լաց էր լինում:



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

## ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ ● ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ ●

**Անսովոր թեթևությամբ նա ոտքի կանգնեց: Քիչ հետո թակում էր Տիգրանի սենյակի դուռը: Պատասխանը ուշանում էր: Նա թակեց նորից ու նորից: Ոչինչ լսելի չէր: Քիչ տատանվելով, հրեց դուռը և քաշացավ:**

**Ապակե սեղանի վրա լույսի արագությամբ պտըտվում էր մի թափանցիկ, կարմրավուն անոթ, որի մեջ եռացող նյութը աստիճանաբար գորշ գույն էր ստանում: Սեղանին ցրված էին պանապան միներալներ, ձկան ողնաշարներ և այլ թափթփուկներ: Չկները երնի ավազանից էին: Տիգրանը նստած էր մեջքով դեպի դուռը, ուստի չէր կարող տեսնել Վահրամի դեմքը, բայց բնազդաբար ինչ-որ բան զգալով, շուռ եկավ: Տեսնելով կարմանքից քար կտրած գիտնականին, մի քայլ առաջ եկավ: Խոսքերն ավելորդ էին: Նրանք գրկախառնվեցին:**

**...Ամբողջ նավը թնդում էր չտեսնված նորությունից: Արդեն ոչ մեկի համար գաղտնիք չէր: Պատանի Տիգրանը արհեստական եղանակով գտել էր ամենասովորական, երկրային հող ստանալու ձևը:**

**Մուգ, սև տիեզերքի ֆոնի վրա առկայծում էին աստղերը: Անծիր ճանապարհներով լողում էր մի շարժվող, փայլուն կետ: Դա երկրային մի աստղանավ էր, որ սուրում էր դեպի օտար մոլորակները, այնտեղ երկրային հողում սերմանելու երկրային առաջին ծաղիկը:**

*ՆԱՐԻՆԵ ԳԵՎՈՐԳՅԱՆ*
*Երևանի № 82 դպրոց,*
*8-րդ դասարան*

*Արցունքները հոսում էին նրա դեմքով: Նա նստել էր հատակին և ձեռքերով դեմքն էր տրորում, իսկ ձեռքերն ամբողջ թանաքոտ էին, և դեմքն ամբողջ թանաքոտվել էր. Ուրանի գլուխն էլ լրիվ կապտել էր:*

*Խե՛ղճ Դարյա Սեմյոնովնա... Մի՞թե իսկապես նրան հիվանդանոց են տարել:*

*Խե՛ղճ Լյուսկա: Նստել է հատակին ու լաց է լինում:*

*Ի՞նչ անել...*

*— Լյո՛ւսկա,— ասացի,— հերի՛ք է լաս: Ուրանին ամբողջովին թանաքոտեցիր:*

*— Ես տա-ատիկիս խղճո՛ւմ եմ...*

*— Լյո՛ւսկա, ի՞նչ ես հատակին նստել: Տատիկդ անպայման կլավանա:*

*Ուրանը սրտաճմլիկ մնգստաց: Ես զգացի, որ իմ աչքերն էլ սկսեցին քոր գալ:*

*— Լյո՛ւսկա,— ասացի,— եթե թաշկինակ չունես, իմը վերցրու:*

*Լյուսկայի դեմքն ամբողջովին կոլավորվել էր, կարմրել, իսկ աչքերը հանկարծ միագույն դարձան, ինչ-որ տխուր գույնի... Նա նստել էր անկողնուս մոտ և դեմքը սրբում էր իմ սավանով...*

*— Նա քայլել չի կարողանում... պառկած է հիվանդանոցում... մենա-ակ... առանց ի-ի ինձ...*

*Ես չդիմացա: Սկսեցի քիթս վեր քաշել:*

*— Լյու-ո՛ւսկա, դե՛, լաց մի՛ լինի: Ես էլ եմ տատիկիդ խղճում, բայց լաց չեմ լինում...— ես աննկատելի սրբեցի արցունքներս սավանով:*

*— Լյո՛ւսկա, դե հանգստացի՛ր: Մի հատ խնձո՛ր կեր, հը՞...*

*— Տատիկիս խղճու-ո՛ւմ եմ...*

*— Դե մի՛ լացիր, խնդրում եմ, մի՛ լացիր... Լսի՛ր, ախր դու ինձ հետ պարապելու ես եկել, չէ՞: Էլ ինչո՞ւ ես լալիս... Քեզ ինձ են կցել, թե՞ չես ուզում: Պատասխանի՛ր, կցե՞լ են, թե՞ ոչ:*

*— Կցել են,— հեծկլտաց Լյուսկան:*

*— Դե էլ ի՞նչ ես նստել: Պարապի՛ր հետս: Ահա մի խնձո՛ր կեր և սկսի՛ր: Լա՞վ: Լյո՛ւս, հը՞, լավ: Լա՛վ:*

*— Լա՛վ,— ծանր թառանչ արձակեց Լյուսկան, դարձյալ ընդհատ հեծկլտաց, և այդ ամբողջ ժամանակի ընթացքում առաջին անգամ ուղիղ նայեց երեսիս իր տխուր աչքերով:*

*Թարգմ. Ա. ՄԱՆԱՍՅԱՆԻ*

## ● ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ ● ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ






**Դու նման ես ճերմակ ձյունի փաթիլի,**
**Ցողդ շող է ուրախության կաթիլի:**
**Դու ես գարնան դարպասների բանալին,**
**Արևի հետ ճամփա տալիս ձնհալին:**
**Կարծես բոլոր ծաղիկների մայրն ես ջինջ,**
**Մորս նման դեպի քեզ ես կանչում ինձ:**

*ԱՐԱՅԻԿ ԼՈՒՍԻՆՅԱՆ*
*Երևանի № 2 հեռակա դպրոց,*
*8-րդ դասարան*






**Խշշում են բարդիները հեռվում,**
**Կանգնած են հպարտ ու սլացիկ,**
**Միմյանց հեքիաթ են պատմում՝**
**Անտառի հեքիաթը գեղեցիկ:**

**Հովի հետ օրորվում են մեղմ,**
**Օրորվում, սվսվում կամաց,**
**Հետո էլ ժպտում ու լալիս են՝**
**Շարժելով ճյուղերը կանաչ:**

*ՍՈՒՍԱՆՆԱ ԱՍԱՏՐՅԱՆ*
*Երևանի № 148 դպրոց,*
*7-րդ դասարան*

# ՀՊԱՐՏ ՁԻՈՒԿԸ

ԱՆԱՀԻՏ ՓԱՐՍԱՄՅԱՆ

Նման չէր նա մյուս մտրուկներին, չէր գնում մյուսների հետ մարգագետնում տրտինգ տալու, մեն-մենակ սուրում էր հեռուները: Մայր ձին նրան ասում էր.

— Կկորչես, փոքրի՛կս, շատ հեռուները մի՛ գնա:

Իսկ մտրուկըետ էր գցում գլուխն ու բարակ ոտքերի վազելու ցանկությունը կապած՝ ասում.

— Չեմ կորչի, ճամփաները գիտեմ:

Եկավ ժամանակը, և փոքրիկ մտրուկը դարձավ ձիուկ՝ ջահել և ուժեղ: Նա փարթամ, շագանակագույն՝ բաշ ուներ, սև աչքեր, հարթ ու փայլուն մորթ: Հպարտ էր, բավական էր մեկը մի փոքր կոպիտ վարվեր հետը, խռովում վիրավորվում էր: Ռունգերը դողում էին, գլուխը ետ էր գցում և առջևի ոտքերով դոփում էր գետինը:

— Դժվար կլինի մեր որդու բանը,— ասում էր մայր ձին,— նա այնքան հպարտն է:

Հայր ձին լռում էր: Ինքն էլ ջահել ժամանակ այդպիսին էր եղել:

Մի անգամ մայր խոյը ձագուկներին առաջն արած գնում էր կերսանքի, երբ նրա դեմ ելավ հպարտ ձիուկը:

— Մի կո՛ղմ քաշվիր,— իր սովորության համաձայն կոպիտ ճղճղաց մայր խոյը:

Ձիուկը վրդովվեց.

— Չի՞ կարելի մի քիչ ավելի քաղաքավարի խոսել:

— Սրան տե՛ս, ամբարտավանի մեկը,— ճղճղաց խոյը,— ա՛ռ քեզ,— և տեղնուտեղը մի գունդ ցեխ շպրտեց ձիուկի վրա:

Ձիուկը արհամարհանքով նայեց նրան ու ասաց.

— Ճիշտ որ խոյ:

Խոյը վրդովվեց և ամբողջ երեկո ձայնը գլուխը գցած ճղճղում էր: Հետո եկավ ու բողոքեց մայր ձիուն: Մայր ձին նրան հանգստացրեց, խոստանալով հանդիմանել ձիուկին:

Իսկ ձիուկը, միևնույնն է, չէր կարողանում տանել անհարգալից վերաբերմունք:

Մի օր էլ ձիուկի ու նրա ծնողների, հավերի, խոյերի ու ճագարների տերը եկավ բակ: Մոտեցավ ձիուկին: «Իսկը լծելու ժամանակն է,— ասաց տերը,— ինչպե՛ս է մեծացել»:

Ձիուկի ծնողները, որոնք իրենք էլ լծկան էին, հոգոց հանեցին.

— Դա կյանքի օրենքն է, ձիու ճակատագիրը, ի վերջո բոլորին էլ լծում են:

Հպարտ ձիուկը լռում էր: Հուզմունքից դողում էին նրա ռունգերը ու առջևի ոտքերը դոփում էին գետինը: Քիչ այն կողմ պառկած մայր խոյը լսում էր խոսակցությունը և ասաց.

— Մի տես, թե ի՛նչ հպարտն է: Մենք՝ խոյերս, առանց հպարտության էլ վատ չենք ապրում: Պիտի լծեն, հապա ի՛նչ:

Հայր ձին դարձյալ լռում էր: Հավերը քրքջացին:

Առավոտյան եկան ագարակատերն ու աշխատողները: Ձիուկին հանեցին մսուրից: Դրսում կանգնած էր անտառ գնալու պատրաստ սայլը, մի ուրիշ ձի արդեն լծված էր՝ նա գլուխը խոնարհած խոտ էր պոկոտում:

Այն է, ուզում էին լծել հպարտ ձիուկին, երբ նա ետ գցեց գլուխը, թափահարեց բաշն ու մի ոստյունով պոկվեց տեղից...

— Որդյա՛կ,— լսվեց մայր ձիու աղիողորմ կանչը:

Հպարտ ձիուկը փախավ լեռները, լսել էր, որ այնտեղ, իբրև թե վայրի ձիեր կան, որ ապրում են ազատ ու անսանձ...

Իսկ գայլերի մասին չէր լսել:

*Նկ. ԱՆՈՒՇ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ*






*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*
*Բանասիրության դոկտոր*

## 5. ՉԿԱ ԳԵՂԵՑԻԿ ԽՈՍՔ ԱՌԱՆՑ ԱՄՈՒՐ ՏՐԱՄԱԲԱՆՈՒԹՅԱՆ

Գիտական լինի թե գեղարվեստական՝ լավ խոսքի ոչ թե ցանկալի, այլ պարտադիր հատկանիշը տրամաբանված լինելն է: Իսկ դա այն խոսքն է, որ միտքն արտահայտում է հստակ, առանց ավելորդ բառերի:

Մտքի արտահայտման այդպիսի դասական օրինակներ շատ կան ժողովրդական բանահյուսության մեջ. «Առանց կրակի ծուխ չի լինի», «Ինչ կցանես, էն կհնձես», «Մինչև չգա եռինը, չի հիշվի առաջինը», «Գողը որ տանից լինի՝ եզը երդիկից կհանեն», «Ջուրն ընկնողը ձեռքը գցում է փրփուրին»: Նկատո՞ւմ եք՝ ոչ մի ավելորդ բառ: Գիտական բանաձևերի պես՝ սրանց միջից ևս ոչ մի բառ չի կարելի հանել, չի էլ կարելի ավելացնել՝ առանց միտքը խաթարելու: Ասենք նաև, որ ժողովրդական իմաստուն ասացվածքները, ինչպես ձեռք ծանոթ բազմաթիվ բանավոր խոսքեր, աֆորիզմներ՝ նույնպես ունեն գիտական արժեք, քանի որ դրանք խտացնում են մարդկության բարոյական փորձն այնպես, ինչպես գիտական բանաձևերը՝ գիտական փորձը: Ե՛վ մեկ, և՛ մյուս դեպքում մենք գործ ունենք աշխարհի ճանաչողության հետ: Այս նույնը վերաբերում է բանաստեղծությանը, գեղարվեստական գրականությանը, ավելի առաջ գնալով ասենք՝ արվեստներին առհասարակ: Զուր չէ, որ ասվում է՝ գիտությունն էլ, արվեստն էլ, նաև գրական արվեստը, ծառայում են աշխարհի ճանաչողությանը, միայն թե՝ ամեն մեկն իր սեփական միջոցներով:

Ո՞րն է գրականության միջոցը: Իհարկե, խոսքը, այս դեպքում՝ գեղարվեստական խոսքը, ահա ինչու մեծ գրողներին կոչում ենք գեղարվեստական խոսքի վարպետներ: Եվ ումի՞ց մենք պետք է ուսանենք ստույգ, հստակ, տրամաբանված խոսքի արվեստը, եթե ոչ այդ վարպետներից: Հայ գրականությունը դրա համար մեզ տալիս է բոլոր հնարավորությունները բոլոր տարիքների համար: Ամենափոքր հասակից՝

Մի լինի ուրագի պես,
Միշտ դեպի քեզ, միշտ դեպի քեզ,
Այլ եղիր սղոցի պես,
Մին դեպի քեզ, մին դեպի մեզ:

Եսասեր չլինելու, միտապես նաև ընկերոջ, դիմացինի, նաև մեկ ուրիշի մասին մտածելու ազնիվ գաղափարը՝ բյուրեղացած ընդամենը մի քանի տողում, խոսքի ամենապարզ, բայց այնպիսի ստույգ միջոցներով, այնպիսի հստակ տրամաբանությամբ, որ միտքը մատչելի է դառնում նույնիսկ ամենափոքրերին: Այսպիսի սքանչելի մանկական բանաստեղծություններ շատ կան հայ գրականության մեջ: Դրանք պետք է յուրացվեն, որ հետո մատչելի և սիրելի դառնան ավելի բարդ բանաստեղծական հյուսվածքներ:

Կարծես թե դարձել եմ ես տուն,
Բոլորն առաջվանն է կրկին.
Նորից դու հին տեղը նստում,
Շարժում ես խիկը մեր հին.
Մանում ու հեքիաթ ես ասում,
Մանում ես անվերջ ու արագ.
Սիրում եմ պարզկա քո լեզուն,
Ձեռներդ մաշված ու բարակ:
Նայում եմ, մինչև որ անզոր
Գլուխըս ծնկիդ է թեքվում.
Նորից ես մանուկ եմ այսօր,
Դրախտ է նորից իմ հոգում:
Արևը հանգչում է հեռվում,
Գետից բարձրանում է մշուշ.
Հեքիաթըդ անվերջ օրորում,
Իլիկըդ խոսում է անուշ...

Քնարական խոհի արտահայտման ինչպիսի՜ նրբություն, հուզմունքի որպիսի՛ հարստություն, նվագային ներդաշնակություն: Բայց այս դեպքում մեզ գրավողը Վահան Տերյանի բանաստեղծության ոչ թե այդ հատկություններն են, այլ այն, թե ինչպես անվրեպ նա գտել է խոսքի այն եղակի, անփոխարինելի միջոցները, որոնք կատարյալ տրամաբանությամբ արտահայտել են իրեն պաշարած խոհն ու հուզմունքը: Փորձեք ավելացնել կամ պակասեցնել այդ միջոցները, փոխարինել դրանք ուրիշներով կամ տեղաշարժել՝ և ամեն ինչ կփչանա: Բայց չէ՞ որ նույնն էինք ասում ֆիզիկայի և մաթեմատիկայի բանաձևերի վերաբերյալ: Այո՛, հենց ա՛յդ էինք ասում և հիմա էլ նույնը՝ գիտական լինի միտքը թե բանաստեղծական՝ նա պետք է գտնի իր խոսքային ճշմարիտ, վերստին

ասենք՝ տրամաբանված արտահայտությունը: Դա՛ է իդեալը, դրա՛ն պետք է ձգտենք ամենուրեք, ինչ ասպարեզում էլ լինի: Ուրիշ բան, որ բանաստեղծությունը պետք է ունենա նաև հուզական բովանդակություն (առանց դրա ի՞նչ բանաստեղծություն), իսկ գիտական բանաձևը՝ ոչ (և դա պետք էլ չէ նրան):

Եվս մի շատ կարևոր ընդհանրություն՝ ինչպես գիտական, այնպես էլ բանաստեղծական դարձվածքն անհնար է ավելի սեղմ, ավելի լավ վերարտադրել, սեփական խոսքերով պատմել: Դրանք պետք է անգիր անել: Բայց ոչ թե թութակի պես,— ասվա՛ծ ապատի ձեզ այդ աղետից,— այլ իմաստավորելո՛վ, դրանց էության մեջ թափանցելո՛վ, դրանց բովանդակությունը յուրացնելով այնպե՛ս, որ ձեր սեփականը թվա:

Ի՞նչ կտա ձեզ այդ անգիր անելը: Շա՛տ բան: Շա՛տ ավելի, քան կարծում եք:

Իհարկե, գիտական բանաձևը յուրացնելով, դուք Արքիմեդ կամ Նյուտոն չեք դառնա, ինչպես դասական բանաստեղծությունները յուրացնելով, չեք դառնա Թումանյան կամ Տերյան: Դրանք մտքերի ու խոհերի անթերի բյուրեղացումներ են, որոնց ձիրքը տըրվում է ընտրյալներին: Բայց անգիր անելու, յուրացնելո՛վ անգիր անելու դեպքում դուք ոչ միայն հարստացնում եք ձեր ներաշխարհը, ձեռք բերում գիտելիքներ, այլև՝ տրամաբանված, ստույգ, հստակ մըտածողության անգնահատելի փորձ: Չէ՞ որ, մնացած ամեն ինչից բացի, դրանք խոսքի գործադրման բարձրագույն արտահայտություններ են: Իսկ դա ամենից կարևորն է:

Նկատած կլինեք՝ լավ խոսքի (գրավոր թե բանավոր) գաղտնիքը ճոխության մեջ չէ, ոչ էլ հազվագյուտ բառեր գործածելու, ոչ էլ վարժ ու սահուն՝ բառերի հեղեղ թափելու: Անցեր մարդիկ են, որ կարող են դրանով հիանալ՝ մի տեսե՛ք ինչ ճարտար է խոսում: Նախանձելին և օրինակելին այդպես խոսողը չէ, այլ այնպե՛ս խոսողը, որի մասին ասում են՝ ունի երկաթե տրամաբանություն:

Այնպես որ՝ լավ խոսելու գաղտնիքն ասելիք ունենալու և ասելիքը լեզվական ստույգ միջոցներով, տրամաբանված ընթացքով մատուցելու մեջ է: Չե՞ք նկատել, թե որքան շուտ է ձանձրացնում թեկուզև ամենաճոխ, բայց անտրամաբան խոսքը: «Կապ չունի՛»,— ասում են դպրոցականները սովորաբար: Իսկ «կապ չունի», որովհետև խոսողը հստակ տրամաբանություն չունի: Առանց դրա այլևս ի՞նչ գեղեցիկ խոսք, որքան էլ ճոխ լինեն բառերն ու դարձվածքները:

Ահա ինչու մեր այս ամբողջ զրույցը նվիրեցինք խոսքի տրամաբանությանը, գեղեցիկ խոսքի առաջին պայմանին: Առաջին, բայց բնավ էլ ոչ վերջինին: Նախապայմանին հաջորդում են հազար ու մի ուրիշ պայմաններ, ուրիշ հարցեր ու խնդիրներ:

Բայց ամեն ինչ՝ հերթով:




# Հայաստանը ռուս նկարիչների աչքերով

Նկարիչ, ճարտարապետ, արվեստաբան, Պետերբուրգի ակադեմիայի փոխպրեզիդենտ Գրիգորի Գրիգորևիչ Գագարինը 1829—1839 թթ. գտնվելով դիպլոմատիկական, 1841—64 թթ. զինվորական ծառայության մեջ, մասնակցել է կովկասյան ռազմական գործողություններին: Նրա այդ շրջանի աշխատանքներից մեկ համար հատկապես ուշագրավ են երևանյան կտավները, որոնք հնարավորություն են տալիս պատկերացում կազմելու քաղաքի չպահպանված տեսարանների ու շինությունների, կենցաղի ու սովորույթների մասին: «Երևանի ծածկած շուկան», «Երևանի իջևանատունը», «Սարդարի պալատը» կտավները, նաև պատմական մեծ արժեք են ներկայացնում: Ահա սարդարի պալատի հայելապատ դահլիճը, զորքերին ու բարձերին թիկնած է սարդարը, առջևը արևելյան ճոխությամբ մարմարակերտ շատրվանը, որն այժմ գտնվում է Երևան քաղաքի պատմության թանգարանում:

Հայելապատ դահլիճում է առաջին անգամ բեմադրվել Ա. Ս. Գրիբոյեդովի «Խելքից պատուհաս» պիեսը: Այժմ այդ տեղում գտնվում է Արարատ գինու կոմբինատը, որի պատին «Խելքից պատուհասի» բեմադրությունը փաստագրող հուշատախտակ կա:

Այս նկարը տալիս է հայելապատ դահլիճի իրական ճարտարապետական պատկերը. այն եղել է բակի շարունակությունը կազմող կիսափակ սրահ: Ամենայն հավանականությամբ, «Խելքից պատուհասը» բեմադրվել է սրահում, իսկ հանդիսատեսները տեղավորվել են բաց երկնքի տակ:

*ԱԻԴԱ ԲԱԲԱՅԱՆ*
*Երևան քաղաքի պատմության թանգարանի բաժնի վարիչ*



*Լուսանկարը՝ Ա. ԱՃԷՄՅԱՆԻ*



digitised by A.R.A.R.@




## Հավերժ ռուս ժողովրդի հետ

Ստեփանավանի քաղաքի № 1 դպրոցում կայացավ ցերեկույթ՝ նվիրված պատմական մեծ իրադարձությանը՝ Հայաստանը Ռուսաստանին միավորելու 150-ամյակին: Մինչ այդ, դպրոցականները ուշագրավ նյութեր էին ձեռք բերել հայ և ռուս ժողովուրդների մշակութային և տնտեսական կապերի վերաբերյալ: Վահանակներում առանձնահատուկ տեղ էր հատկացված հայ ժողովրդի մեծ բարեկամ Ա. Ս. Գրիբոյեդովին: «Մենք ապաստագրում ենք հայ գյուղացիներին և վարում ամենաարդարացի պատերազմը»,— ասել է նա:

Ցերեկույթը վարում էր յոթերորդ դասարանցի Սոֆյա Դունյամալյանը: Զեկուցումներով հանդես եկան Կարինեն, Հրայրն ու Մարինեն, որոնք պատմեցին 150 տարի առաջ հայ ժողովրդի համար բախտորոշ ճակատամարտերի, հայ և ռուս ժողովուրդների սրտագին բարեկամության մասին:

Դպրոցականները մեծ խնամքով ու վարպետությամբ էին պատրաստել դրվագներ Երևանի բերդի գրավումից, Օշականի ճակատամարտից ու Էջմիածնի ազատումից:

Ցերեկույթն ամբողջացավ չորրորդ և վեցերորդ դասարանցիներից կազմված երգչախմբի ու ասմունքողների ելույթներով:

# ԱՄԵՆԱՄԵԾ ԳՆԴԱԿԸ

Հինգերորդ դասարանում շուտ-շուտ հիվանդանում էի ու շատ անգամ դպրոց էի գնում կոկորդս կապած, սպիտակ կապը դարձել էր իմ աշակերտական համազգեստի անբաժանելի մասը: Երբ հայտնվում էի դասարանում, տղաներն ինձ թվում էին նոր ու անծանոթ, աղջիկները՝ չափից ավելի կարեկցող ու բարի, իսկ ուսուցիչները ներողամիտ էին, խրախուսում էին իմ ամենաչնչին առաջխաղացումը: Դա ոգևորում էր ինձ և չարացնում իմ հասակակից շատ տղաների: Նրանք, ինձ իմ անունով չէին դիմում, այլ ասում էին «Ճուտիկ»: Եվ եթե մեկին արդեն ճուտիկ են անվանում, ուրեմն, այսպես թե այնպես, շատ բան արգելվում է նրան: Մինչդեռ այնպես էի ցանկանում վազքի մրցումներին մասնակցել, դպրոցի տուրիստական խմբի հետ էքսկուրսիա գնալ և, հատկապես, ֆուտբոլ խաղալ: Սակայն ստիպված էի լինում ցույց տալ, թե արհամարհում եմ այդ բոլորը: Երբ ֆիզկուլտուրայի ուսուցիչը՝ ընկեր Պետրոսյանը գնդակը խոշոր ափի մեջ դաշտ էր մտնում և այն հանձնում ամենաուժեղ ֆուտբոլիստին՝ Ռուբիկին, ես ակամա մի փոքր ետ էի քաշվում: Ռուբիկը, ոտքը դնելով գնդակին, սկսում էր խաղընկերներ ընտրել: Գևորգն էլ իր թիմի անդամներին էր թվարկում, և մեր դասարանի տղաները մի քանի րոպեից երկու թիմի բաժանված, գրոհում էին միմյանց վրա: Ինձ չէին հիշում, երբ որևէ թիմում խաղացող էր պակասում:

Ես խոցվում էի, մանավանդ երբ մի ցածր դասարանցու, որ գուցե դասից էր փախել, բայց ճարպիկ էր, վերցնում էին թիմի պակասը համալրելու: Ինձ մնում էր ձևացնել, թե ֆուտբոլ չեմ սիրում, իբրև դա անհետաքրքիր խաղ է: Ես ինձ մխիթարում էի Ծերունի Խոտտաբիչի փիլիսոփայությամբ, որ դաշտում անիմաստ բան է կռվել ինչ-որ մի գնդակի համար, կոտորել միմյանց, որ ամեն խաղացող իր գնդակը պետք է ունենա: Թող գրողի ծոցը կորչեն բոլոր ուկե գնդակները, հուշակավոր Պելեի հետ միասին, որի մասին գիշեր-ցերեկ խոսում էր դարպասապահ Սամսոնը:

Մի անգամ էլ, երբ սովորականի պես թիմերը կազմվեցին ու մի հոգի պակաս էր, ես ցցված էի նրանց առաջ: Բայց թիմապետերը նախընտրեցին պակաս կազմով խաղալ: Չհասկացա ինչպես եղավ, ես լաց եղա ու լալով հեռացա դաշտից, վճռելով դառնալ ոչ թե ինչ-որ Պելե, այլ տիեզերագնաց Գագարին: Այս մտքի հետ էի, որ լսվեց Ռուբիկի ձայնը.

— Հե՜յ, ճուտի՛կ, արի՛ այստեղ:

Ես կանգ առա ու արագ սրբեցի արցունքներս:

— Դարպասապա՛հ կանգնիր,— ասաց նա,— բայց որ մի հատ գնդակ ես բաց թողել, վե՜րջ...

Ծաղրում են ինձ, մտածեցի, բայց ինչ-որ մի անդիմադրելի ուժ ինձ մղեց խաղադաշտ:

— Որտե՞ղ կանգնեմ, դարպասի ո՞ր անկյունում..



ՍԱՄՎԵԼ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ



Նկ. ՍԱՐՈ ԿԱԼԵՆՑԻ



Բոլորը քրքջացին, իսկ Ռուբիկը չշփոթվեց. բռունցքը օդում ճոճելով գոռաց, որ հենց Ճուտիկին խաղացնելով են հաղթելու, այն էլ 6:0 հաշվով: Հետո նա ինձ մոտեցավ, ուսերս մտերմորեն գրկելով տարավ, կանգնեցրեց դարպասի կենտրոնում.

— Հենց որ գնդակը գա, բռնի՛ր, չթողնես դարպասից ներս մտնի:

Ես սկսեցի կանգնած տեղս ցատկոտել... Ծիծաղը գնալով սաստկանում էր, բայց իսկույն դադարեց, երբ սկսվեց խաղը: Ես առաջին անգամ զարմանքով տեսա, թե ինչպես աննթարթորեն գնդակը սովորական մի խաղալիքից վերածվեց ինչ-որ փոթորկոտ բանի ու բոլորին խառնեց իրար: Ամբողջ ժամանակ ես հետևում էի գնդակին, նրա ամեն մի շարժմանը: Այն մերթ թռչում էր դարպասից դարպաս ամբողջ դաշտի վրայով, մերթ դիպուկ կրակվում հակառակորդների կողմից և կամ; հենց դարպասի մոտ մոլորվում ու կորչում խաղացողների ոտքերի արանքում: Ես անտեղի տեղն ընկնում էի, քերծում ծնկներս ու արմունկներս և կոշիկների անթիվ հարվածներ ստանում կողերիս, իսկ գնդակը գլորվում էր դարպասից դուրս: Ետ էի տանում այն և ամեն անգամ դեպի խաղադաշտ նետելիս ինձ թվում էր, թե այն ռումբի պես պայթում է, բոցավառվում և խաղացողները ասես շտապում էին փրկել այն: Եվ լավ էին փրկում, ամեն մեկը ձգնում էր իր հակառակորդից խլել գնդակը, տանել դեպի դարպասը՝ ամենաբարձր գոչյուններով ու աղաղակով: Սամսոնը կարծես մի երկաթյա դուռ լիներ իր դարպասի համար, բայց մերոնք վերջապես ճեղք գտան ու Ռուբիկը գնդակն այն ռեղից ներս մխրճեց: Դրանից հետո հակառակորդի դարպասը երկրորդ գնդակը կուլ տվեց:

Գևորգի թիմը մոլեգնեց: Գոռում էին բոլորը, մեկը մյուսին «խելքի հրավիրում», կատաղորեն քացի էին տալիս գնդակին, որտեղ էլ որ նրան հաջողվում էր բռնացնել: Ռուբիկը ոգևորությամբ, ու նրանց չարացնելու համար, ծաղրաբար գոչեց. «Հակառակորդը հուսահատությունից վճռական գրոհի՛ է դիմել», ապա դարձավ ինձ.

— Ճուտո՛, չվախենաս, ճուտո՛...

Վախենալու ժամանակ չկար: Իմ աչքերի առաջ միայն այն մեծ գնդակն էր, և ես սարսափով մտածում էի, ինչ կլինի իմ դրությունը, եթե այդ գնդակով հարվածեն ինձ: Եվ հենց այստեղ էլ հանկարծ ես գնդակն զգացի իմ գրկի մեջ ու ամուր սեղմելով կրծքիս, գլորվեցի գետնին: Դա, կարծում եմ, ամենաուժեղ ու մոլեգին գնդակն էր, և դաշտում մի սարօրինակ վայնասուն բարձրացավ: Մեր թիմի տղաների ցնծությանը հետևեց ոգևորված գրոհը դեպի հակառակորդի դարպասը, և քիչ անց հաշիվը դարձավ 3:0: Այդպես էլ խաղն ավարտվեց:

Երբ տուն վերադարձա, մայրս նայեց ինձ ու սարսափեց:

Վերնաշապիկիս վրա մեկ կոճակն ինչ է, չէր մնացել, մազերս գզգզված թափել էին ճակատիս: Իսկ ես անհոգ սուլում էի ու հիացած ինքս ինձ նայում հայելու մեջ:

— Կռվե՞լ ես, ծեծվե՞լ... այդ ի՞նչ օրն ես գցել...

— Ինձ են ծեծե՛լ, հա՛, հա՛,— ծիծաղեցի:

— Քրտինքի՞ց է շապիկդ ջուր դառել... նորից նշագեղձերդ բորբոքվելու են, նորից պառկելու ես, նորից դպրոց չես գնալու...— դժգոհեց մայրս:

— Վիրահատե՛լ տուր, որ էլ չհիվանդանամ,— ասացի ես ու հայելու մեջ տեսա մորս ժպտացող, զարմացած հայացքը: Նա վաղուց ի վեր համոզում էր ինձ անել այդ, ես դիմադրում էի:



Բացեք աշխարհի քարտեզը և գտեք Սկանդինավյան թերակղզին: Այնուհետև Ֆինլանդիայի հարավարևմտյան ափին՝ Տուրկու քաղաքը: Մտովի օդանավով երկու կարճ թռիչք պատկերացրեք՝ 15 րոպե, մինչև Բոտնիկական ծոցում գտնվող Մարիանայի կղզի և 20 րոպե թռիչք՝ դեպի արևմուտք, դեպի Շվեդիայի մայրաքաղաք Ստոկհոլմ:

Քանի դեռ թռչում ենք Ֆինլանդիայի վրայով, վերևից երևացող տեսարանը տարակուսանք է հարուցում. լճե՞րն են ցամաքի մեջ, թե՞ ցամաքը՝ լճերի: Շվեդիայում պատկերը փոխվում է: Լճերը վիջում են ցամաքին:

Շվեդներն իրենց մայրաքաղաքը սիրում են անվանել Հյուսիսային Վենետիկ: Եվ դրա համար բավականաչափ հիմքեր ունեն: Քաղաքը տեղավորված է Մելարեն լիճը ծովի հետ կապող նեղուցի ափին և ճյուղավորված ջրատարածությունների կապույտ ֆոնին գծագրվում են պողոտաները, որոնք մեծ մասամբ կառուցապատված են Սկանդինավյան կարմիր գրանիտով: Այդ տաք գույներին միանում են գմբեթների վառ կանաչը և ոսկեգույնը, գույնզգույն նավերի ու նավակների անընդհատ երթևեկությունը, իրար հաջորդող կամուրջները: Ստեղծվում է մի համայնապատկեր, որ նույնիսկ կինոնկարներով և ալբոմներով Վենետիկին ծանոթ մարդը կարող է բացականչել՝ իրոք, սա Հյուսիսային Վենետիկն է:

Ինչպես աշխարհի շատ նշանավոր քաղաքներ՝ Լենինգրադը, Փարիզը, Լոնդոնը, Հռոմը, Ստոկհոլմը նույնպես հարուստ է թանգարաններով: Տուրիստն այստեղ շատ բան ունի տեսնելու: Սակայն ինչքա՞ն կների ժամանակը: 52 թանգարան: Դրանցից երկուսը յուրօրինակ են այնքան, որ անպայման պետք է տեսնել: Մեկը հռչակավոր քանդակագործ Միլլեսի տունթանգարանն է, մյուսը՝ «Վասա» նավը, սակայն մինչ այդ մի փոքր պտույտ՝ Ստոկհոլմում:

Քաղաքի հնագույն թաղամասը. սխալված չենք լինի, եթե ասենք, որ դա ևս յուրահատուկ թանգարան է: «Արգելավայր է,— ասաց գիդը,— ավելի ճիշտ՝ հայտարարված է արգելավայր, սակայն կասկածելի է, կհաջողվի՞ պահպանել»:

Պատկերացրեք մի բարձրավանդակ, որի դիմաց փռված է Ստոկհոլմի համայնապատկերը՝ Հյուսիսային

*ՄԱՐԳՈ ՂՈՒԿԱՍՅԱՆ*

# ՀՅՈՒՍԻՍԱՅԻՆ

Վենետիկն իր գունագեղությամբ: Բարձրավանդակի գառիթափը, ստորոտից սկսած մինչև վեր, կառուցապատված հնադարյան տներով: Ժամանակակից շենքերից այնքան տարբեր են այդ տները, փոքր պատուհաններով և տախտակե կրկնափեղկերով, կղմինդրե տանիքով, ձևավոր ջրհորդաններով, ժամանակի ընթացքում մաշված սալահատակով ու աստիճաններով, ավտոների մուտքն արգելակող սահմանաքարերով... Այստեղ ամեն ինչ լռությամբ և հնի բույրով է շնչում, և դրանով արվեստի մարդկանց նախընտրելի վայրն է դարձել: Այստեղ տուն են վարձում աշխարհի տարբեր երկրների նկարիչները, երաժիշտները, բանաստեղծները: «Ներշնչանքի աղբյուր է այս տեսարանը,—ասում է գիդը և ավելացնում.—Սակայն ավելի մեծ շահույթ կարող են ստանալ, եթե այս գողտրիկ տները քանդեն և տեղը բարձրահարկ հյուրանոցներ կառուցեն»:

Առայժմ գառիթափը ուշադրություն է գրավում իր հնադարյան շինություններով և իր գոյությամբ թելադրում է հարց՝ քանդե՞լ, թե՞ թողնել:



Ստոկհոլմի հին թաղամասերից մեկում այնքան նեղ փողոցներ կան, որ եթե մարդ կանգնի կենտրոնում և թևերը պարզի, ափերով կհպվի աջ ու ձախ կողմերի տներին: Հնարավոր է նույնիսկ, որ թևերն ազատորեն չկարողանա պարզել. վերև նայելիս հինգվեց հարկանի շենքերի քիվերի արանքից գծագրվում է երկնքի կապույտ, նեղ ժապավենը՝ մեր աչքին այնքան անսովոր տեսարան: Հին քաղաքի համեմատաբար լայն փողոցներից մեկում մենք տեսանք ուսանողական մի երաժշտախումբ, որ մայթի վրա համերգ էր տալիս: Երիտասարդներից մեկը դրամատուփի փոխարեն ջութակի կափարիչը ձեռքին մոտենում էր ան-



ցորդներին, որոնք մի քանի րոպեով կանգ էին առնում երաժշտություն լսելու:



...1912 թվականին Օլիմպիական խաղերը տեղի են ունեցել Ստոկհոլմում: Անցանք օլիմպիական ստադիոնի կողքով: Կարմիր աղյուսից կառուցված սյուներ և կամարներ էին, որ էլիպսաձև շրջափակում էին ֆուտբոլի դաշտը: Ժամանակակից սպորտային հսկա կառույցների համեմատ մի համեստ ստադիոն էր դա,



# ՎԵՆԵՏԻԿԸ

որտեղ, սակայն, 1912 թվականին իրենց ուժերն էին չափել աշխարհի ուժեղագույն մարզիկները: Քաղաքի տարբեր հատվածներում ուշադրություն էին գրավում ժամանակակից տեխնիկայով կառուցված փողոցները, որոնք խաչաձևվում էին տարբեր բարձրությունների վրա և թռիչքաձև տարածվում տարբեր ուղղություններով:

Հողամաս՝ բնությունը սիրողների համար: Եվ, պատկերացրեք, հենց քաղաքի կենտրոնում: Ցանկացողը 50—100 կրոնով կարող է վարձել մի փոքր հողամաս: Բնասերները ծաղիկ են աճեցնում, փորձեր դնում, սերմեր ու սոխուկներ փոխանակում:

Ընդհանրապես Ստոկհոլմը կանաչի մեջ թաղված քաղաք է: Եվ բոլորովին պետք չէ զարմանալ, եթե ասենք, որ հյուսիսային այդ քաղաքը տուրիստներին գրավում է նաև ծառերի ու ծաղիկների բազմազանությամբ: Յասամանի ծառ. բունը հիշեցնում էր խաղողի հին վազ, ոստոտ ու ոլորուն, որը գետնից մեկ-երկու մետր վերև ճյուղավորվում է և առատորեն ծածկվում մուգ մանուշակագույն ծաղիկներով: Դեկորատիվ ծառեր՝ սրճագույն տերևներով և դեղին ծաղիկներով: (Հետագայում Շվեդիայի Գյոտեբորգ քաղաքի պրոսայգիներից մեկում մենք «հայտնագործեցինք», որ վարդակակաչի մայր ցողունը կարող է ճյուղավորվել հինգ ցողունի և դիտողին հիացնել հինգ խոշոր ծաղիկներով: Ինչպես նաև կարող է լինել վարդակակաչ, որն ունենա 40 ծաղկաթերթիկ):



Ստոկհոլմում մենք այցելեցինք սովետական տուրիստների համար չափազանց թանկագին մի վայր. այն գրադարանը, որտեղ մի քանի անգամ պարապել է Վլադիմիր Իլյիչ Լենինը: Ճաշակով ձևավորված ըսկբոսայգու կենտրոնում կանգնած էր երկհարկ պարզ մի շենք, որի ճակատին գրված էր «Թագավորական գրադարան»: Մուտքի մոտ մեզ դիմավորեց դոկտոր Դալը: Սկզբում ծանոթացրեց գրադարանի հետ: Ասաց, որ դա Շվեդիայի պետական գրադարանն է և այդտեղ դարերի համար կուտակվում է այն ամենը, ինչ լույս է տեսնում Շվեդիայում: Այնուհետև պատմեց այն հիշարժան տարեթվերի մասին, երբ Վլադիմիր Իլյիչն այցելել է գրադարան: Առաջին անգամ 1907 թվականին, Ժնև գնալու ճանապարհին նա մի քանի օր մնում է Ստոկհոլմում: Գրադարանի այցելուների մատյանում, որտեղ ինչպես այն ժամանակ, այնպես էլ հիմա ստորագրում են բոլոր պարապողներն անխտիր, պահպանվում է Լենինի ստորագրությունը՝ Ջոն Ֆրեյ կեղծանվամբ: 1910 թվականին Լենինը դարձյալ Ստոկհոլմում է. այս անգամ այցելուների մատյանում նա թողնում է իր սեփական ազգանունը՝ Ուլյանով:

Հինգերորդ և վերջին անգամ Լենինը Ստոկհոլմում եղել է 1917 թ. ապրիլի 13-ին: Դոկտոր Դալը մեզ առաջնորդում է ընթերցասրահ, որի հեռավոր անկյունում, պատուհանի տակ, առ այսօր պահպանվում է այն սեղանը, որի վրա պարապել է Իլյիչը: Հայտնի է, որ նա հիմնականում օգտվել է փիլիսոփայությանը և քաղաքականությանը նվիրված գրականությունից:

Այդ սրահում մեզ համար ամեն ինչ հետաքրքիր էր. թե պատուհանի տակ դրված պարզ սեղանն ու աթոռը, հնուց պահպանված միակ գրադարակը, թե եռահարկ գրապահարանները, որոնցից օգտվելու համար պետք էր աստիճաններով բարձրանալ նեղ պատշգամբները, ինչպես նաև բազմաթիվ ընթերցողները, որոնք լուռ պարապում էին այն գրասեղաններին, որոնց առաջ տարբեր ժամանակներում նստել են աշխարհի ականավոր շատ գիտնականներ:

*(Շարունակելի)*





## Անտեղի վիրավորանք

Անգլերեն լեզվի դասն սկսված էր: Ուսուցչուհին հարցրեց, թե ով կկարդա և կթարգմանի հանձնարարված տեքստը: Ձեռք բարձրացրեց Նունեն:

Նա մեկ օր առաջ այդ տեքստը թարգմանել, նախապատրաստել էր և առանց սխալի կարդաց ու թարգմանեց: Այնուհետև ուսուցչուհին սկսեց հարցնել մյուսներին: Նելլին դժվարությամբ էր պատասխանում հարցերին, նախադասությունները կիսատ-պռատ էր թարգմանում: Երևում էր, որ տանը «մատը՝ մատին չի տվել»:

Հասկանալի է, որ լավ կարդալու և թարգմանելու համար Նունեն «հինգ» ստացավ, իսկ Նելլին լավ պատրաստ չէր և «երեք» ստացավ:

Դասն ավարտվեց, ուսուցչուհին դուրս գնաց: Նունեն գրքերն էր տեղավորում պայուսակում: Նելլին շրջվեց դեպի նա և արհամարհանքով ասաց.

— Էդ ի՞նչ է որ, ես էլ կարող եմ տանը գրել, այստեղ կարդալ ու...

— էլի ինչ-որ բան մրթմրթալով քթի տակ, դուրս եկավ դասարանից:

Նունեն ոչինչ չպատասխանեց, իսկ մենք զարմացած մտածում էինք, թե ով է Նելլիին խանգարում, որ ինքն էլ տանը խնամքով նախապատրաստի դասերը ու Նունեի նման բարձր գնահատական ստանա:

ԿԱՐԻՆԵ ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ
Նոր-Հաճնի № 1 դպրոց,
9-րդ դասարան

## ԱՐՁԱԳԱՆՔՈՒՄ ԵՆ ՏՊԱԳՐՎԱԾԻՆ

## Ինձ հետ էլ է պատահել

«Պիոների» այս տարվա № 5-ում տպագրված իր նամակում Վալյան գրում է, որ ամբողջ օրը դաս սովորելուց հետո էլ չի կարողանում «հինգեր» ստանալ: Պատճառն այն է, որ Վալյան նստում է դաս սովորելու, բայց ուշքը ու միտքը այլ տեղ է, օրինակ, երբ նրա ընկերները կինո են գնում, նա մտածում է այդ մասին: Ինձ հետ էլ էր առաջ այդպես պատահում. վերադառնում էի դպրոցից, որոշում էի երեկոյան նստել և դասերս պատրաստել: Բան դուրս չէր գալիս, որևէ պատրվակով ծրագրածս խափանվում էր: Բայց այժմ եթե նույնիսկ եղանակը դրսում շատ հաճելի է կամ ակումբում հրաշալի ֆիլմ են ցուցադրում, ես ինձ կարողանում եմ արդեն ստիպել և նախ դասերս եմ պատրաստում: Հետո հասցնում եմ կինո էլ գնալ, գրքեր էլ եմ կարդում, սպորտով էլ եմ զբաղվում, մայրիկիս էլ եմ օգնում: Դպրոցից վերադառնալուն պես լավ պատկերացնում եմ անելիքներս և հերթականությամբ ու ժամանակին ամեն ինչ անում-հասցնում եմ:

Ի՞նչ կարելի է ասել Վալյային: Միայն որոշելը բավական չէ, պետք է նաև կամք ունենալ և իրագործել որոշածը:

ՎԱԼՅԱ ՍԻՄՈՆՅԱՆ
Թալինի շրջանի Արագած ավան,
9-րդ դասարան

## Եվ այսպես ամեն օր

Բազմաթիվ անգամ կազմել եմ ռեժիմ, բայց անօգուտ:

Պատահում է, երբ հանկարծ, որևէ տեղ եմ ունենում գնալու, ամենաշատը երեք ժամում պատրաստում եմ բոլոր դասերս, բայց երբ ոչ մի տեղ չեմ շտապում և գիտեմ արդեն, որ ամբողջ օրն իմ տրամադրության տակ է, անմիջապես չեմ սկսում պարապել: Անընդհատ դասագրքերը վերցնում ու դնում եմ, և... հաջորդ օրը, դասերը ինչպես հարկն է չսովորած, դպրոց եմ գնում: Եվ այսպես գրեթե ամեն օր: Ես չեմ մտածում ռեժիմ կազմելու մասին, միևնույն է, այն չեմ իրականացնի:

ԱԻԴԱ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Վարդենիս ավան

# ԵՐԿՏԱՐԵՑԻՆ ԴԱՍԱՐԱՆՈՒՄ

Վարդանը միայնակ կանգնած էր միջանցքում, իսկ դասընկերները բակում խմբված, տաք-տաք վրուցում էին: Եթե դրանից առաջ նկատած չլինեի, որ նա առանց վույգի է հերթապահում, որ թելադրության ժամանակ Լալյան հրաժարվեց նրա տված տետրից ու էլի շատ բաներ, գուցե և դա չգրավեր ուշադրությունս:

Ես նոր էի ծանոթանում այդ դասարանին: Աշակերտների հետ զրուցելիս, իմացա, որ Վարդանը երկտարեցի է և նրանք չեն ցանկանում ընկերություն անել երկտարեցու հետ (մանավանդ որ դասարանում շատերը լավ սովորողներ են): Հարցրեցի, թե ինչո՞ւ են այդպես վարվում, և ահա թե ինչպիսի պատասխաններ լսեցի.

ԼԵՎՈՆ.— Երկտարեցիները սիրում են դասերը խանգարել: Հիշում եմ, մեր դասարանը եկավ մի երկտարեցի: Նա դասարան մտավ վայրիվերո կանչերով, բոլորին աջ ու ձախ հրմշտելով: Հետո թռմփաց առաջին իսկ պատահած նստարանին: Մեր դասարանի ամենավատ աշակերտն անգամ մի պահ շփոթվեց: Պարզ է, դրանից հետո դասղեկի միջնորդությունը իզուր էր՝ մեկնումեկիս կողքին տեղավորել նրան: Նստեց առանձին: Արմեն էր անունը: Երբ դասատուն ներկա-բացակա էր անում, զարմանքով նկատեցինք, որ նա չկա: Նայեցինք՝ տեսանք նստարանի տակ է մտել: Ծույլերն ու անկարգապահները հիացական բացականչություններով լցրին դասարանը:

Բայց սրանով միայն սկսվում էր Արմենի արկածները: Քիչ անց դասարանը լցվեց կատվային մլավոցով: Արմենին ընկերացան մեր դասարանի «արմենականները»: Ուսուցիչը կայրացած գնաց դեպի Արմենը: Նա դուրս թռավ նստարանի տակից և սկսեց վազվզել դասարանում: Մենք միահամուռ ջանքերով նրան կարգի հրավիրեցինք այդ օրը: Բայց դրանից հետո էլ նա շատ գլխացավանք պատճառեց դասարանին:

ՄԱՐԻԵՏԱ.— Երկտարեցին մինչև դասարանին մերվելը սկզբում կարող է նաև սուսիկ-փուսիկ լինել: Այդպիսին էր Անդրանիկը: Առաջին օրերին նույնիսկ կարծում էինք, թե ամաչում է, որ երկտարեցի է ու որոշել է դասերից այլևս ետ չմնալ: Սակայն շուտով նա գտավ իր նման մեկ-երկուսին, և... նրանք նստում էին տարբեր շարքերում: Դասարանի մի ծայրից մյուսը «ռազմի դաշտ» էին դարձրել: Դասի ամենահետաքրքիր պահին թքով կլորացված թղթերը խողովակով փչում էին դիմացինի վրա: Ամենասարսափելին այն էր, որ հարմարեցնում և փչում էին ականջիդ մեջ: Դա նրանց հրճվանք, իսկ մեզ վիրավորանք ու դառնություն էր պատճառում: Պարզ է, որ այդպիսիներին չես սիրի և հետներն ընկերություն չես անի:

ՆՈՐԱՆԵ.— Երկտարեցիները մեր դասարանի լավ սովորող Ռուբիկից պահանջել էին հրաժարվել դաս պատասխանելուց: Ռուբիկը չէր լսել նրանց: Հաջորդ օրը նրանք ծեծել էին Ռուբիկին:

Հետաքրքիր էր լսել նաև երկտարեցիներին:

ՎԱՂԻՆԱԿ.—Մի անգամ երկու «երկուս» էի ստացել: Պատմության ուսուցիչը սպառնաց, որ երրորդ «երկուսը» կնշանակի, եթե հաջորդ օրն էլ դաս չպատասխանեմ: Գնացի տուն հաստատ որոշումով, որ ամոթ է, պիտի սովորեմ: Դեռ դասագիրքը չէի բացել, լսեցի ինձ դուրս կանչող ծանոթ սուլոցը: Մոռացա աշխարհն ու մայրիկիս նախատինքների տարափի տակ դուրս նետվեցի... Ուշ վերադարձա: Հաջորդ օրը դպրոցում դարձյալ վաստակեցի «արժանին»: Դրանից հետո ինձ հավաքեցի: Եթե կամք չունեցար, ծույլերը քեզ իրենց ետևից կտանեն և իրենց նման կդարձնեն:

ԱՆԱՀԻՏ.— Երկտարեցիները տարբեր են լինում: Յոթերորդ դասարանում Գևորգը եկավ մեր դասարան: Մենք գրեթե անտարբեր էինք նրա հանդեպ: Նույնիսկ մեկ ամիս հիվանդացավ, չգնացինք տեսության: Ապաքինվելուց հետո, երբ եկավ, դասարանը անուշադրության մատնեց նրան: Կարծես ոչ ոքի համար նա գոյություն չուներ: Դա, ըստ երևույթին, խորը վիրավորեց Գևորգին: Չնկատելու տալով մեր անտարբերությունը, նա սկսեց սովորել: Շուտով արդեն «չորս» և «հինգ» էր ստանում: Դասարանը սկսեց նկատել Գևորգին, հարգել ու սիրել նրան: «Գևորգը փոխվել է»,— ասում էին ուսուցիչները: Գևորգը աստիճանաբար նվաճեց դասարանի և ուսուցիչների հարգանքը:

Այո, հարգանքն ու սերը պարգև չեն և ոչ ոքի չեն տրվում իբրև ընծա: Հարգանքն ու սերը նվաճում են վարքով, աշխատանքով, փոխադարձ հարգանքով ու սիրով:

*ՌՈՒԶԱՆՆԱ ԵՐԻՑՅԱՆ*
*Ուսուցչուհի*



ԲԵՐԹՈԼԴ ԲՐԵԽՏ

# ՁԵՎԸ ԵՎ ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆԸ

Դիտելով մի նկար, ուր պատկերված առարկաները շատ տարօրինակ ձև ունեին, պարոն Կ-ն նկատեց. «Որոշ նկարիչներ ներկայացնելով մեկ շրջապատող աշխարհը, վարվում են փիլիսոփաների պես. ձգտելով կատարելագործել ձևը, աչքաթող են անում բովանդակությունը: Երբ ես աշխատում էի այգեպանի մոտ, մի անգամ այգեպանը մկրատը ձեռս տվեց և կարգադրեց տակառում աճեցրած դափնեթուփը խուզել գնդաձև: Հանդեսների և մեծ տոնախմբությունների օրերին նա վարձով էր տալիս այդ տակառը: Ես անմիջապես գործի անցա և սկսեցի կտրատել կախկխված տերևներն ու ճյուղերը: Բայց որքան ջանացի, չկարողացա թփին գնդի ձև տալ: Մի կողմը կարճանում էր, մյուս կողմը երկար մնում: Երբ վերջապես թփին մի կերպ գնդի ձև տվեցի, ստացվեց այնքան փոքր, որ այգեպանը սրտնեղած բացականչեց.

— Տեսնում եմ, որ սա գունդ է, իսկ թո՞ւփն ուր է:



Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

# ԲՆՈՒԹՅԱՆ ՏԱՐՐԵՐԻ ՓՈԽԱԴԱՐՁ ԿԱՊՆ ՈՒ ՊԱՅՄԱՆԱՎՈՐՎԱԾՈՒԹՅՈՒՆԸ

## 4. ԱԾԽԱԾՆԻ ԵՎ ԹԹՎԱԾՆԻ ՇՐՋԱՆԱՌՈՒԹՅՈՒՆԸ ԲՆՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Գիտնականները հաշվել են, որ ածխածնի քանակության ավելացումը անխուսափելիորեն առաջ կբերի մթնոլորտի ընդհանուր տաքացում: Այսպես օրինակ, մթնոլորտում նման տեմպերով ածխաթթու գազի կուտակման դեպքում 30—40 տարի հետո օդի ջերմաստիճանը համաշխարհային մասշտաբով կավելանա 8—10 աստիճանով: Այդ դեպքում կսկսեն հալվել Անտարկտիդայի, Արկտիկայի և բարձրլեռնային շրջանների սառցադաշտերը: Եվ քանի որ հենց միայն Անտարկտիդայում ներկայումս կուտակված է 24 միլիոն խորանարդ կիլոմետր սառույց, ապա պարզ է, թե նման տաքացման հետևանքով որքան սառույցներ կհալվեն և ջրերը կհոսեն դեպի Համաշխարհային օվկիանոս: Գիտնականները հաշվել են, որ դրա հետևանքով օվկիանոսի մակարդակը կբարձրանա 56 մետրով: Թե ինչպիսի համաշխարհային աղետների կհանգեցնի այդ երևույթը՝ դժվար չէ կռահել:

Այսօր արդեն ածխածնի քանակի ավելացման շնորհիվ ջերմաստիճանի ընդհանուր բարձրացում է նկատվում, որի հետևանքով արդեն հալվում են բևեռների և բարձրլեռնային կանգվածների սառցադաշտերը:

Մյուս կողմից էլ բազմաթիվ կանխագուշակումներ են արվում թթվածնի և օզոնի կոնցենտրացիաների նվազման մասին: Դրա պատճառը մեծ քանակությամբ թթվածին սպառող ժամանակակից արդյունաբերության և տրանսպորտի բուռն զարգացումն է: Մեծ քանակությամբ թթվածին է խլում նաև տարբեր քիմիական նյութերի օքսիդացման՝ պրոցեսը:

Հաշվված է, որ ներկայումս վառելիքի բոլոր ձևերի այրման, մետաղաձուլական և քիմիական արդյունաբերության տարբեր թափոնների լրացուցիչ օքսիդացման նպատակով ծախսվում է 10—20 միլիարդ տոննա ($10-20\times10^9$ տոննա) թթվածին: Իսկ թթվածնի տարեկան ֆոտոսինթետիկ մթնոլորտի արտադրությունը կազմում է 120—$190\times10^9$ տոննա: Նշանակում է, մարդու տնտեսական գործունեության հետևանքով առաջացած թթվածնի լրացուցիչ ծախսերը կազմում են դրա բնական առաջացման ընդհանուր քանակության 10—16 տոկոսը:

Ըստ ՅՈՒՆԵՍԿՕ-ի տվյալների, ներկայումս մեր մոլորակի վրա ծախսվում է այնպիսի քանակությամբ թթվածին, որը կբավարարեր 43 միլիարդ մարդու օրգանիզմի կենսագործունեության համար: Եվ դա, զարմանալի չէ, եթե հաշվի առնենք, որ միայն մեկ ավտոմոբիլը 950 կմ վազքի ընթացքում ծախսում է այնքան թթվածին, որը մեկ մարդու կբավարարեր մի ամբողջ տարի:

Մեկ հեկտար կանաչ տնկարկները մեկ տարվա ընթացքում մաքրում են մոտավորապես 18 միլիոն խորանարդ մետր օդ: Միայն մեկ օրում դրանք կլանում են 8 կգ ածխաթթու գազ, այսինքն՝ որքան արտաշնչում է 200 մարդ:

Մթնոլորտում, յուրաքանչյուր հեկտար հողատարածության վրա պարունակվում է մոտ 2,5 տոննա ածխածին (ածխաթթու գազի ձևով): Դրա հետ միասին ամեն տարի մեկ հեկտար ցանքը մթնոլորտից յուրացնում և բույսի օրգանների մեջ է ներդնում մինչև 8 տոննա ածխածին: Ինչպես ցույց են տվել հաշվարկները, մթնոլորտի ածխածինը այս տեմպերով սպառելու դեպքում 35 տարի

Սկիզբը՝ № 6, 7, 8։

հետո ածխածնի մթնոլորտային ամբողջ պաշարը կսպառվեր: Չպետք է մոռանալ նաև, որ թեև ավելի քիչ, այնուամենայնիվ, զգալի քանակությամբ ածխածին է սպառվում նաև մանրէների և կենդանիների կողմից: Միայն կենդանի օրգանիզմների շնչառության շնորհիվ մթնոլորտ արտամղված ածխածինը բավարար չէ այդ կորուստը փոխհատուցելու համար: Ածխածնի հաշվեկշիռը պահպանվում է խմորող և փըտեցնող սնկերի և մանրէների ակտիվ գործունեության շնորհիվ: Այդ պրոցեսը պատկերված է




այստեղ տրված սխեմայում (տես՝ ածխածնի շրջապտույտի պարզ սխեման):

Թթվածնի մի զգալի մասն էլ կապվում է կարբոնատների և ցամաքների ու ծովերի նստվածքների կազմի մեջ մտնող օրգանական նյութերի հետ, մտնում նըրանց քիմիական բաղադրության մեջ: Դրա հետևանքով կյանքի համար խիստ կարևոր այդ քիմիական տարրը հարյուրավոր, հազարավոր, նույնիսկ միլիոնավոր տարիներով դուրս է մնում կենսագեոքիմիական շրջանառությունից: Վերջապես, թթվածնի մի զգալի մասը անդառնալիորեն կապվում է հանքային ապարների հողմնահարման, առաջվող մետաղների ու սուլֆիդների օքսիդացման, ինտենսիվ կավառաջացման պրոցեսներում, օքսիդների հիդրացման ընթացքում և այլն:

Երբ բույսերը ընկնում են ջրի խոր շերտերի ճնշման տակ, դըրանք չեն քայքայվում մանրէների կողմից, սակայն կրում են մի շարք քիմիական փոփոխություններ, որի շնորհիվ առաջանում է տորֆ, գորշ ածուխ, լիգնիտ և վերջապես՝ քարածուխ: Նման պըրոցեսների հետևանքով բուսական և կենդանական մի շարք ծովային օրգանիզմներ կարող են վերածվել նավթի: Այդ պրոցեսների հետևանքով ևս մեծ շրջանառության ոլորտից ժամանակավորապես դուրս է մնում ածխածնի զգալի քանակություն, որը սակայն կըրկին մթնոլորտ է վերադառնում, երբ մարդը երկրի ընդերքից հանում է բրածո վառելիքները և օգտագործում:

Սովետական գիտնականները, և առաջին հերթին ակ. Տիմոֆեև-Ռեշկովսկին գտնում են, որ թըթվածնի համաշխարհային պաշարները կարելի է զգալիորեն ավելացնել, կրկնակի անգամ բարձրացնելով բույսերի ֆոտոսինթետիկ ակտիվությունը: Դրա հետ միասին կարելի է նաև 3—8 տոկոսով ավելացնել ֆիզիոլոգիապես ակտիվ ճառագայթման համամոլորակային գործակիցը: Ժամանակակից ագրոնոմիական, գենետիկական, ագրոքիմիական գիտությունները և հողերի մելիորացիան հնարավորություն են տալիս այս հարցի վրա լավատեսորեն նայել: Նախկինում անջրդի 600—700 միլիոն հեկտար անապատների ոռոգումը հացահատիկային կուլտուրաների մեկ հեկտարի բերքատվությունը կբարձրացնի մինչև 50 ցենտներ, որը հնարավորություն կտա ամեն տարի ֆոտոսինթեզի շնորհիվ կապակցել մինչև $20—30 \times 10^9$ տոննա ածխածնի երկօքսիդ, կարտադրվի մինչև $15—30 \times 10^9$ տոննա թթվածին և 30—40 տարի հետո մեր մոլորակի յուրաքանչյուր բնակիչ կապահովվի 500 կգ հացահատիկային մթերքներով:

Թթվածնի ընդհանուր քանակության և ածխաթթու գազի խըտության նվազեցման օգտին «կաշխատեն» նաև հսկայական տարածություն զբաղեցնող նորատունկ անտառները, բնակավայրերի կանաչ գոտիներն ու անտառպուրակները, զբոսայգիները: Դրան մեծ չափով կնպաստեն նաև անթափոն արդյունաբերական ձեռնարկությունները, տըրանսպորտային միջոցների կատարելագործումը:

Մարդու գործունեության կարևորագույն բնագավառներից մեկը ներկայումս պետք է հանդիսանա «ածխածին-թթվածին» հաշվեկշռի արմատական բարելավումը: Միայն այդ դեպքում մենք կկանխենք «թթվածնային սովը», որը մարդուն սպառնացող ամենասուր վտանգներից մեկն է հանդիսանում:

ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Կենսաբանության դոկտոր,
պրոֆեսոր

# ՄՐԳԱՀԱՆԴԵՍ

*ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ*

Ճամբար եկած տղայի պես
Այգում խնձորն է կարմրել,
Կեռասենին իր ճյուղերից
Կախ է տվել ականջօղեր:
Միրանենին զարդարվել է
Երանգներով ծիածանի,
Իսկ տանձենին լապտերներ է
Վառել-կախել ամեն գույնի:
Որտեղի՞ց է նռնենին այդ
Որդան կարմիր գույնը ճարել.

Ավանդել են գուցե նրան
Մեծ նկարիչ պապերը մեր:
Փշատենին ճերմակահեր
Բարի տատիկ լինի ասես.
Փշատներն է փեշում պահել,
Մինչև հասնի ու նոր տա մեզ:
Կքած ծանր բեռների տակ,
Դաշտերում շոգ, արևակեզ,
Բաց են արել ահա նրանք
Բուրումնավետ մրգահանդես:

ՖՐԻԴՐԻԽ ՎՈԼՖ

# ԴԱՆԱԿԸ ԵՎ ՀԱՑԸ


Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

Մի օր հանդիպում են քաղաքացին, որի մոտ դանակ կար, և գյուղացին, որն ուներ մի բոքոն հաց:

— Մի կտոր հա՛ց տուր ինձ,— խնդրում է քաղաքացին,— դրա փոխարեն դանակս կտամ, որ հացդ կտրտես:

— Կտաս, որ հացս կտրտե՞մ,— բացականչում է գյուղացին,—չէ՛, հացի դիմաց դու դանակդ ի՛նձ տուր:

— Մի կտոր հացի համար՝ մի ամբողջ դանա՞կ,— վրդովվում է քաղաքացին, և նրանց մեջ մեծ վեճ է բորբոքվում, որը շարունակվում է մինչև իրիկուն:

Բայց քաղցը՝ քաղց է և իրենն է անում:

— Լա՛վ, թող քո ասածը լինի, ես քեզ հաց տամ,— համաձայնում է գյուղացին,— դանակդ տուր ինձ:

— Ոչ մի դեպքում,— վայրանում է քաղաքացին,— ես դանակս քեզ կտամ, եթե դու ամբողջ բոքոնը ինձ տաս:

Այդպես էլ անում են: Եվ դարձյալ մեկի ձեռքին հացն է լինում, մյուսի ձեռքին՝ դանակը:

Վ. ՏԱՆԱՍԻՅՉՈՒԿ

# ՀԱՎԱՍԱՐԱԿՇՌՈՒԹՅՈՒՆ ԿԱՄ ՊԱՅԹՅՈՒՆ



## ՃԱԳԱՐԱՅԻՆ ՄԵԾ ՊԱՏԵՐԱԶՄ

Մարդու անհեռատեսության հետևանքով առաջացած էկոլոգիական պայթյուններ տեղի են ունեցել բոլոր մայր ցամաքներում: Բայց Ավստրալիան ամենից շատ տուժեց: Բանը նրանում է, որ նրա բնությունը շատ յուրօրինակ է: Խոշոր գիշատիչներ չկան, բացի դինգո շնից, և այլ վայրերից այստեղ վերաբնակեցված կենդանիներն իրենց ավելի քան ապահով են զգում. հատկապես ճագարները, որոնց մասին ավստրալիացիներն ասում են՝ «նրանք կերան ոչխարներին»:

Մոտ հարյուր քսան տարի առաջ ճագարներին Ավստրալիա բերեցին, որպեսզի աճեցնեն որպես որսի կենդանիներ: Միայն մի քանի զույգ բերեցին, բայց... հիսուն տարի հետո նրանք մի քանի հարյուր միլիոն դարձան:

Ոչխարաբույծները սարսափեցին. ախր տասը ճագար նույնքան խոտ էին ուտում, ինչքան մեկ ոչխարը:

Ոչխարների թիվը Ավստրալիայում 15 միլիոնից իջավ 7 միլիոնի:

Ինչ միջոցներ ասես, որ չկիրառեցին ճագարների դեմ: Կրակում էին, թունավորում, հալածում, ամբողջ երկրով մեկ նույնիսկ երկաթալարե ցանկապատ քաշեցին: Եղավ ժամանակ, որ նրանց բոլորին համարյա ոչնչացրին, վարակելով վիրուսային հիվանդությամբ: Սակայն հիվանդացած, բայց ողջ մնացածների սերունդները վիրուսի նկատմամբ դիմացկունություն ձեռք բերեցին:

Մինչև օրս, փոփոխա՛կի հաջողություններով, շարունակվում է ճագարային այդ մեծ պատերազմը, ահռելի միջոցներ կլանելով:

## ՊԱՅԹՅՈՒՆԻ ԴԻՄԱՑ՝ ՊԱՅԹՅՈՒՆ

Էկոլոգիական պայթյուններ տեղի են ունենում ոչ միայն կենդանական, այլև բուսական աշխարհում:

Ամերիկյան կակտուս Օպունցիան Ավստրալիա բերվեց որպես դեկորատիվ ծաղիկ: Ֆերմերներին դուր էր գալիս, որ այդ կակտուսից կարելի է գեղեցիկ կանաչ պատնեշներ բարձրացնել, որոնց միջով ոչ մի ոչխար կամ կով չէր կարող անցնել: Շատ արոտավայրեր այդպիսի պատնեշներով շրջափակվեցին: Ոչ ոք չէր կարծում, որ կակտուսները կարող են գրավել արոտավայրերը: Մեր դարասկզբին կակտուսն Ավստրալիայում արդեն չորս միլիոն հեկտար արոտավայր էր գրավել:

Այս էկոլոգիական պայթյունի դիմաց Հարավային Ամերիկայի գիտնականները նոր պայթյուն գտան: Դա վնասատու հրաթիթեռն էր, որի թրթուրները սնվում են կակտուսներով:

Անմիջապես հրաթիթեռի մի քանի գրամ ձվիկ ուղարկվեց Ավստրալիա:

Հետագայում կատարվածը անտառի հրդեհի հետ կարելի է համեմատել:

Թիթեռները բազմացան անհաշիվ քանակությամբ: Նրանք ամպերով թռչում էին կակտուսների թփուտներում: Կակտուսներն սկսեցին արագ տեղի տալ: Երեք տարի հետո որոշ շրջաններում լրիվ անհետացան:

Այս պատմությունը բարենպաստ վախճան ունեցավ: Դժբախտաբար նման ոչ բոլոր պատմություններն են այսպես վերջանում:

Սկիզբը՝ «Պիոներ» № 8

## ՖԼՈՐԻԴԱՅԻ ԳԵՂԵՑԻԿ ՀՐԵՇԸ

Հարավային Ամերիկայի արևադարձային երկրներում՝ Վենեսուելայում և Բրազիլիայում, կարմանալի գեղեցիկ ջրային մի բույս է աճում՝ երկնագույն ծաղիկներով հիացինտը:

Մի անգամ Ֆլորիդայի մի գեղապարդիչ ցուցահանդեսի սրահը կարդարեց այս ծաղկով: Ցուցահանդես այցելածներից շատերը, հիացած ծաղկի տեսքով, մի-մի շիվ վերցրին, իրենց տների առջևի լճակներում և գետակներում աճեցնելու համար:

Եվ ի՞նչ. մի քանի տարի հետո հիացինտը Ֆլորիդայում մի քանի գետ խցանեց:

Իսկ մինչ այդ սիրող-ծաղկաբույծները հիացինտը տարածեցին աշխարհով մեկ: Այն հասավ Ցեյլոն ու Հարավային Աֆրիկա, Ավստրալիա ու Եգիպտոս:

Հեշտ է կռահել, թե մարդիկ այժմ ինչպես են վերաբերվում

այդ ծաղկին: Բանգլադեշում նրան կապույտ սատանա են անվանում, Հնդկաստանում՝ բենգալական սարսափ, Հարավային Աֆրիկայում՝ ֆլորիդական հրեշ:

Այս սիրունիկը փորձում է կանգնեցնել Միսսիսիպին և Ամազոնի, Գանգեսի ու Զամբեզիի վտակները: Կալնելով գետերի հոսանքը և նույնիսկ խցանելով դրանք, նա վնասում է նավարկությանը և անհնար է դարձնում ոռոգումը, բոլոր պայմաններն ստեղծում մոծակների և այլ հիվանդություններ տարածողների բազմացման համար:

Սակայն ինչո՞ւ նա չի խցանում Օրինոկո գետը, որտեղից ինչ-որ ժամանակ նրան դուրս բերին: Շատ պարզ՝ Օրինոկո գետում ջրային հիացինտով սնվում են դյուգոնները՝ ջրային խոշոր կաթնասունները և չեն թողնում «կապույտ սատանային» բազմանալ: Միսսիսիպիում և Գանգեսում այդպիսի դյուգոններ չկան, իսկ դրանց փոխադրելը շատ ավելի բարդ է, քան փոքրիկ փաթեթով կակտուսի հրաթիթեռի ձվիկներ առաքելը:

Կենդանի բնությունը հավասարակշռության մեջ է գտնվում: Այս երևույթը մեկ հավիտենական է թվում. իհարկե, չէ՛ որ այն առաջացել է երկրի կարգացման միլիոնավոր տարիների ընթացքում: Բայց իրականում այն շատ ավելի փուխր է, քան մեզ թվում է: Դրա համար էլ, բնության կյանքին միջամտելիս կամ այն փոխելիս, մենք պետք է ուսումնասիրենք և նկատի ունենանք հնարավոր հետևանքները: Հակառակ դեպքում ամբողջ երկրներ և մայր ցամաքներ դարձյալ և դարձյալ կցնցվեն էկոլոգիական պայթյուններից:

# ՆՇԱՆԱՎՈՐ ՄԱՐԴԿԱՆՑ ԿՅԱՆՔԻՑ



Երաժշտության մեջ բավականին առաջադիմություն ցուցաբերող մի անչափահաս մի օր դարձավ Մոցարտին, թե.

— Ես էլ եմ ուզում երաժշտություն հորինել, ասացեք խնդրեմ, ինչպե՞ս է այդ արվում:

Մոցարտը պատասխանեց.

— Կմեծանաս՝ կիմանաս:

— Բայց դուք տասներեք տարեկան էիք, որ սկսեցիք...— առարկեց տղան:

— Ճիշտ է, բայց ես երբեք ոչ ոքի չհարցրի, թե ինչպես է այդ արվում:




Մի անգամ ամերիկյան նշանավոր գրող Մարկ Տվենը ստիպված եղավ գիշերել մի փոքրիկ քաղաքում, ուր վրա էր հասել գիշերը: Հյուրանոցում նրան խնդրեցին գրել իր անունը եկվորների մատյանում:

Մատյանը թերթելով, Մարկ Տվենը հանդիպեց մի այսպիսի գրառման.

«Հերցոգ Բեդֆորդ՝ իր ծառայի հետ»:

Երկար չմտածելով, Մարկ Տվենը գրեց.

«Մարկ Տվենը՝ իր ճամպրուկի հետ»:

* * *

Ճամփորդելիս Յոհան Շտրաուսը միշտ հետը տանում էր իր սիրելի սև պուդելին: Մի անգամ նա նկատեց, որ շունը սաստիկ մազաթափվել է. նա այդ մասին ասաց իր սպասավորին, վերջինս մի փոքր կմկմալուց հետո, թե.

— Ես նրա մազը փունջ-փունջ կտրում ու ծախում եմ ձեր անհաշիվ երկրպագուներին, որոնք հավատում են, թե ստանում են ձեր իսկ սեփական խոպոպները:



Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

*Կարդա այս գիրքը*

# «ԲԱՖՈՒՏԻ ՔԵՐԾԵՆԵՐԸ»




Համաշխարհային ճանաչում գտած անգլիացի կենդանաբան Ջերալդ Դարրելի «Բաֆուտի քերծեները» գիրքը մի գրավիչ պատմություն է Աֆրիկայի բնակիչների, բնության ու կենդանական աշխարհի մասին: Կարդալով այս գիրքը, դու կիմանաս, թե աֆրիկացիները ինչո՞ւ են խուսափում լուսանկարվելուց, ինչպես է կապիկը բարեկամություն հաստատում գորտերի հետ: Գիրքն այնքան արագ կմտերմանա քեզ, որ կթվա, թե Բաֆուտի քերծեների հետ ինքդ էլ ես մասնակցում ժայռային դաման, մալոտ գորտերի, թռչող սկյուռի, ոսկեգույն կատվի, մողեսի որսերին: Կտվորես պգուլ? վարվել օձերի հետ, կհիանաս մարմնով փոքրիկ ,բայց մեծ-մեծ աչքեր ունեցող աղվեսակապիկով, որի անունը Գալագո է: Կենդանիները կդառնան քո սիրելի բարեկամները: Դու կճանաչես նրանց բնավորությունների առանձնահատկությունները: Եթե ինքդ էլ սկսես կենդանիներ պահել ու նրանք հրաժարվեն քո մատուցած բազմատեսակ սնունդից, այս գիրքը քեզ հիանալի խորհուրդներ կտա, կդառնա քո լավագույն օգնականը: Բաֆուտի առաջնորդ Ֆոնը կդառնա քո մտերիմը, նույնիսկ նրա տարօրինակությունները քեզ համար սիրելի կդառնան: Քեզ կզարմացնի ու կհիացնի ծերունի Բեյլոուն՝ թռչնավաճառը, որի խանութում կգտնես ուզածդ թռչունը, սակայն, ոչ մի գնով չես կարողանա գնել: Ծերունին այնքան է սիրում թռչուններին, որ չի վաճառում:

Դարրելը ոչ միայն գիտնական է և բնության կրքոտ պաշտպան, այլև խոհուն ու սրամիտ գրող: Նրա գիրքը մի պայծառ էջ ես կբացի քո կյանքում՝ դու կճանաչես, կսիրես բնությունն ու կենդանիներին:

*Մ. ՈՍԿԱՆՅԱՆ*

Լույս է տեսնում 1923 թվականից




9. 1978 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ



Շապիկի առաջին էջը՝ ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատ. քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆԶՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՃՐԱՉՅԱՆ Խ., ՊԵՏՐՈՍՅԱՆ Թ., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր):

«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, №15

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15: Հեռախոսներ՝ 56—82—72, 58—08—88, 56—14—96:

ՎՖ 05006: Պատվեր 1432: Տպաքանակ 53700: Տպ. 3 մամ.: Ստորագրված է տպագրության 12 IX 1978 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:

ԳԻՆԸ 15 Կ.

ԻՆԴԵՔՍ 77806

# ՏԵՐԵՎՆԵՐԸ

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Կախարդական ձեռքով անտես
Աշնան օրից առաջին
Երանգներ են խառնվում պես-պես
Փարթամ այգու կանաչին:
Ու դեղնում են կամաց-կամաց
Տերևները մեկ առ մեկ
Եվ մայր ծառի գիրկը թողած՝
Սլանում են քամու հետ:
Թեթև, անթև ճախրում, թռչում,
Թևածում են վեր ու վար:
— Ո՞ւր եք փախչում,— ծառն է կանչում
Տերևներին հողմավար:—
Թառե՞ք նորից իմ ճյուղին,
Առաջվա պես դալդալե՞ք,
Ոսկեկտուց, ոսկեփետուր
Ու ոսկեթև իմ բալե՞ք:

— Չէ՛, չենք կարող էլ ետ դառնալ,
Հողմն է բռնել մեր թևից,
Մենք գնում ենք ճամփով աշնան
Կորած գարնան ետևից:
Սև ամպերն են չոքել վրան,
Քամիներն են կախարդել,
Մենք ուզում ենք գտնել նրան,
Պաղ կապանքները քանդել:
Արհամարհած ամեն վտանգ,
Գարնան քամու շառաչով,
Ձմռան միջով գիրկդ կգանք,
Որ քեզ զուգենք կանաչով:

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ